Պրոլետարներ բոլոր յերկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Կ ԿԵՆՏԿՈՄԻ ԿՈՒՍ·ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ, ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ՅԵՎ ՄԱՄՈՒԼԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 12—13 (43—44)

ՀՍԽՀ ԿԳԿ հրատարակչություն — «Խորհրդ. Հայաստան»

ՅԵՐԵՎԱՆ—1938

ՀԿ(Բ)Կ ԿԵՆՏԿՈՄԻ ԿՈՒՍ. ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ
ՅԵՎ ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ
# ԲԼՈԿՆՈՏ



№ 12-13—(43-44)



Հայկական ԽՍՀ ԿԳԿ Հրատարակչություն—
«ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՀԱՅԱՍՏԱՆ»
ԵՐԵՎԱՆ—1938

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

ԷՋ



Պատ. խմբագրի պաշտոնակատար՝
Ս. ՊԵՏՐՈՍՅԱՆ

Պատ. խմբ. տեղակալ՝
ՀՐ. ՄԱՐԳԱՐՅԱՆ

Սրբագրիչ՝ Ա. ԲԱՐՍԵՂՅԱՆ
ԳԼԱՎԼԻՏԻ ԼԻԱԶՈՐ ՅՆ 3701

# ԸՆԿԵՐ ՍՏԱԼԻՆԻ ՃԱՌԸ

## ԲԱՐՁՐԱԳՈՒՅՆ ԴՊՐՈՑԻ ԱՇԽԱՏՈՂՆԵՐԻ՝ ԿՐԵՄԼՈՒՄ ՏԵՂԻ ՈՒՆԵՑԱԾ ԸՆԴՈՒՆԵԼՈՒԹՅԱՆԸ 1938 Թ. ՄԱՅԻՍԻ 17-ԻՆ

Ընկերնե՛ր։

Թույլ տվեք առաջարկել գիտության կենացը, նրա ծաղկման կենացը, գիտության մարդկանց կենացը։

Գիտության ծաղկման կենացը, այն գիտության, որը չի պարսպվում ժողովրդից, ժողովրդից հեռու չի պահում իրեն, այլ պատրաստ է ծառայելու ժողովրդին, պատրաստ է ժողովրդին հաղորդելու գիտության բոլոր նվաճումները, որն սպասարկում է ժողովրդին ոչ թե հարկադրաբար, այլ կամավոր կերպով, հաճույքով։ (ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ)։

Գիտության ծաղկման կենացը, այն գիտության, որն իր հին ու ճանաչված դե-

կավարներին թույլ չի տալիս կամայակա-
նորեն պարփակվել գիտության քուրմերի
կեղևի մեջ, գիտության մոնոպոլիստների կե
ղևի մեջ, վորը հասկանում է գիտության
յերիտասարդ աշխատողների հետ գիտու-
թյան հին աշխատողների դաշինքի իմաստը,
նշանակությունը, ամենազորությունը, վորը
կամավոր կերպով ու հաճույքով գիտու-
թյան բոլոր դռները բաց է անում մեր յերկ-
րի յերիտասարդ ուժերի առաջ և հնարավո-
րություն է տալիս նրանց՝ նվաճելու գիտու-
թյան բարձունքները, վորն ընդունում է,
վոր ապագան պատկանում է գիտության յե-
րիտասարդությանը: (ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆ-
ՆԵՐ):

Գիտության ծաղկման կենացը, այն գի-
տության, վորի մարդիկ հասկանալով գի-
տության մեջ հաստատված տրադիցիաների
ուժն ու նշանակությունը և հմտորեն օգտա-
գործելով դրանք հօգուտ գիտության շահե-
րի, այնուամենայնիվ չեն ուզում լինել այդ
տրադիցիաների ստրուկները, վորն ունի
հին տրադիցիաները, նորմաները, դրույթ-
ները փշրելու համարձակություն, վճռակա-
նություն, յերբ դրանք դառնում են հնա-

ցած, յերբ դրանք արգելակի յեն վերածվում առաջխաղացման համար, և վորը կարողանում է ստեղծել նոր տրադիցիաներ, նոր նորմաներ, նոր դրույթներ: (ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):

Գիտությունն իր զարգացման մեջ գիտե վոչ քիչ թվով քաջարի մարդկանց, վորոնք կարողանում եյին փշրել հինը և ստեղծել նորը, չնայած ամեն տեսակ խոչընդոտներին, հակառակ ամեն բանի: Գիտության այնպիսի արիներ, ինչպես Գալիլեյը, Դարվինը և շատ ուրիշները՝ հանրածանոթ են: Յես կուզեյի կանգ առնել գիտության այնպիսի կորիֆեյներից մեկի վրա, վորը միևնույն ժամանակ հանդիսանում է մեր ժամանակի մեծագույն մարդը: Յես նկատի ունեմ ԼԵՆԻՆԻՆ, մեր ուսուցչին, մեր դաստիարակին: (ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ): Հիշեցեք 1917 թիվը: Ռուսաստանի հասարակական զարգացման գիտական անալիզի հիման վըրա, միջազգային դրության գիտական անալիզի հիման վրա ԼԵՆԻՆՆ այն ժամանակ յեկավ այն հետևության, վոր դրությունից միակ յելքը հանդիսանում է սոցիալիզմի հաղթանակը Ռուսաստանում: Այդ ավելի քան անսպասելի հետևություն եր այն ժա-

կավարներին թույլ չի տալիս կամայականորեն պարփակվել գիտության քուրմերի կեղևի մեջ, գիտության մոնոպոլիստների կեղևի մեջ, վորը հասկանում ե գիտության յերիտասարդ աշխատողների հետ գիտության հին աշխատողների դաշինքի իմաստը, նշանակությունը, ամենազորությունը, վորը կամավոր կերպով ու հաճույքով գիտության բոլոր դռները բաց ե անում մեր յերկրի յերիտասարդ ուժերի առաջ և հնարավորություն ե տալիս նրանց՝ նվաճելու գիտության բարձունքները, վորն ընդունում ե, վոր ապագան պատկանում ե գիտության յերիտասարդությանը: (ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):

Գիտության ծաղկման կենացը, այն գիտության, վորի մարդիկ հասկանալով գիտության մեջ հաստատված տրադիցիաների ուժն ու նշանակությունը և հմտորեն օգտագործելով դրանք հօգուտ գիտության շահերի, այնուամենայնիվ չեն ուզում լինել այդ տրադիցիաների ստրուկները, վորն ունի հին տրադիցիաները, նորմաները, դրույթները փշրելու համարձակություն, վճռականություն, յերբ դրանք դառնում են հնացած, յերբ դրանք արգելակի յեն վերածվում առաջխաղացման համար, և վորը կարողանում ե ստեղծել նոր տրադիցիաներ, նոր նորմաներ, նոր դրույթներ: (ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):



Գիտությունն իր զարգացման մեջ գիտե վոչ քիչ թվով քաջարի մարդկանց, վորոնք կարողանում եյին փշրել հինը և ստեղծել նորը, չնայած ամեն տեսակ խոչընդոտներին, հակառակ ամեն բանի: Գիտության այնպիսի արիներ, ինչպես Գալիլեյը, Դարվինը և շատ ուրիշները՝ հանրածանոթ են: Յես կուզեյի կանգ առնել գիտության այնպիսի կորիֆեյներից մեկի վրա, վորը միևնույն ժամանակ հանդիսանում ե մեր ժամանակի մեծագույն մարդը: Յես նկատի ունեմ ԼԵՆԻՆԻՆ, մեր ուսուցչին, մեր դաստիարակին: (ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ): Հիշեցեք 1917 թիվը: Ռուսաստանի հասարակական զարգացման գիտական անալիզի հիման վրա, միջազգային դրության գիտական անալիզի հիման վրա ԼԵՆԻՆՆ այն ժամանակ յեկավ այն հետևության, վոր դրությունից միակ յելքը հանդիսանում ե սոցիալիզմի հաղթանակը Ռուսաստանում: Այդ ավելի քան անսպասելի հետևություն եր այն ժա-

մանակվա գիտության շատ մարդկանց համար: Պլեխանովը, գիտության աչքի ընկնող մարդկանցից մեկը, այն ժամանակ արհամարհանքով էր խոսում Լենինի մասին, պնդելով թե Լենինը ընկնում է «զառանցանքի մեջ»: Գիտության այլ, վոչ պակաս հայտնի մարդիկ պնդում եյին թե «Լենինը խելագարվել է», թե նրան հարկավոր է թագցնել վորևե հեռու տեղ: Այն ժամանակ Լենինի դեմ վոռնում եյին գիտության բոլոր ու ամեն տեսակ մարդիկ, վորպես մի մարդու, վորը ճանկում է գիտությունը: Բայց Լենինը չվախեցավ դեմ գնալ հոսանքին, դեմ գնալ ճարտացածությանը: Ցեվ Լենինը հաղթեց: (ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):

Ահա ձեզ գիտության արիի տիպարը, վոր համարձակորեն պայքար է մղում հնացած գիտության դեմ և ճանապարհ է հարթում նոր գիտության համար:

Լինում է նաև այնպես, վոր գիտության ու տեխնիկայի նոր ուղիներ հարթում են յերբեմն գիտության մեջ վոչ հանրածանոթ մարդիկ, այլ գիտական աշխարհում միանգամայն անհայտ մարդիկ, հասարակ մարդիկ՝ պրակտիկները, գործի նովատորները:

Այստեղ ընդհանուր սեղանի առաջ նստած են ընկերներ Ստախանովը և Պապանինը: Մարդիկ, վորոնք գիտական աշխարհում անհայտ են, վորոնք չունեն գիտական աստիճաններ, իրենց գործի պրակտիկներն են: Բայց ո՞ւմ հայտնի չէ, վոր Ստախանովն ու ստախանովականները արդյունաբերության ասպարիզում իրենց գործնական աշխատանքում, վորպես հնացած՝ դեն շպրտեցին գոյություն ունեցող նորմաները, վորոնք սահմանվել եյին գիտության ու տեխնիկայի հայտնի մարդկանց կողմից, և մտցրին նոր նորմաներ, վորոնք համապատասխանում են իսկական գիտության ու տեխնիկայի պահանջներին: Ո՞ւմ հայտնի չէ, վոր Պապանինն ու պապանինականները դրեյփող սառցադաշտի վրա կատարած իրենց գործնական աշխատանքով անցողակիորեն, առանց հատուկ դժվարության, դեն շպրտեցին Արկտիկայի մասին յեղած հին պատկերացումը վորպես հնացած և սահմանեցին նորը, վորը համապատասխանում է իսկական գիտության պահանջներին: Ո՞վ կարող է ժխտել, վոր Ստախանովը և Պապանինը նովատորներ են գիտության մեջ, մեր առաջավոր գիտության մարդիկն են:

Ահա թե ե՛ լ ինչպիսի «հրաշքներ» են լինում գիտության մեջ:

Ցես խոսեցի գիտության մասին: Բայց լինում է ամեն տեսակ գիտություն: Այն գիտությունը, որի մասին յես խոսեցի, կոչվում է ԱՌԱՋԱՎՈՐ գիտություն:

Մեր առաջավոր գիտության ծաղկման կենացը:

Առաջավոր գիտության մարդկանց կենացը:

ԼԵՆԻՆԻ և լենինիզմի կենացը:

Ստալինովի և ստախանովականների կենացը:

Պապանինի և պապանինականների կենացը: (ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):





# ՀԱՅԱՍՏԱՆԻ Կ(Բ)Կ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵՅԻ ՀԱՇՎԵՏՎՈՒԹՅՈՒՆԸ ՀԿ(Բ)Կ 11-ՐԴ ՀԱՄԱԳՈՒՄԱՐՈՒՄ

## ԸՆԿԵՐ ԳՐ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԻ ԶԵԿՈՒՑՈՒՄԸ

*Ընկերներ, Հայաստանի Կոմունիստական (բոլշևիկների) կուսակցության 11-րդ Համագումարը համագումարի յե բերում ՀԿ(բ)Կ Կենտրոնական Կոմիտեյի աշխատանքը 1937 թվի մայիսից մինչև 1938 թվի մայիս ժամանակաշրջանում:*

*Այդ ժամանակաշրջանի բնորոշ առանձնահատկություններն են հանդիսանում մեր յերկրի ներսում տեղի ունեցած պատմական մեծ նշանակություն ունեցող իրադարձությունները:*

*Այդ ժամանակաշրջանում մեծ փոփո–*

խություններ են կատարվել կապիտալիստական յերկրների փոխհարաբերությունների մեջ:

Կապիտալիստական յերկրները, վորոնց մաշում են անտեսական ճգնաժամն ու հակասությունները, յելք են վորոնում աշխարհի նոր վերաբաժանման մեջ:

Բոլոր կապիտալիստական պետությունները կատաղի զինվում են և պատրաստվում են իմպերիալիստական նոր պատերազմի:

Այդ կողոպտիչ պատերազմի նախաձեռնողներն են հանդիսանում Գերմանիայի, Իտալիայի ու Ճապոնիայի ֆաշիստական պետությունները, վորոնք արդեն անցել են հարձակման և իրագործում են իրենց հափշտակողական պլանները, պրովոկացիոն յեղանակով ամբողջ մարդկությանը մղելով դեպի համաշխարհային իմպերիալիստական նոր պատերազմ:

Կողոպտելով և ստրկացնելով իրենց սեփական ժողովրդական մասսաներին, ֆաշիստական կառավարությունները ներխուժում են ուրիշի տերիտորիաները:

Ճապոնական միլիտարիստները Մանջուրիան հափշտակելուց հետո, իրենց բանակներն ուղղեցին չին մեծ ժողովրդի դեմ, ամբողջ Չինաստանը գրավելու և իրենց գաղութը դարձնելու համար:

Հաբեշստանը վերածված է իտալական ֆաշիզմի գաղութի: Իտալո-գերմանական ֆաշիզմի միացյալ ռազմական ուժերը կոտորում են իսպանական հերոս ժողովրդին, ավերում են նրա խաղաղ քաղաքները, նրա մեծագույն կուլտուրական արժեքները:

Գերմանական ֆաշիզմը, վորպես իմպերիալիստական նոր պատերազմի գլխավոր հրձիգ, արդեն հափշտակեց Ավստրիայի ինքնուրույն պետությունը և դեռ այնտեղ ամուր չնստած՝ նա հարձակում է պատրաստում Չեխոսլովակիայի դեմ: Իր գործակալության միջոցով նա ամենուրեք կազմակերպում է դավադրություններ, խռովություններ և ձգտում է հափշտակել Հունգարիան, Լիտվան:

Նա ձեռք է բարձրացնում բալկանյան ժողովուրդների ինքնուրույնության վրա, ձգտում է ճզմել Թյուրքիան, վորպեսզի իրականացնի գերմանական իմպերիալիզմի հին պլանները Բեռլին—Բաղդադ ստրատեգիական գծի վերաբերյալ:

Ֆաշիստական վոճրագործները լկտիաբար բարձրացրել են իրենց գլուխն անդ-

խություններ են կատարվել կապիտալիստական երկրների փոխհարաբերությունների մեջ:

Կապիտալիստական յերկրները, վորոնց մաշում են անտեսական ճգնաժամն ու հակասությունները, յելք են վորոնում աշխարհի նոր վերաբաժանման մեջ:

Բոլոր կապիտալիստական պետությունները կատաղի զինվում են և պատրաստվում են իմպերիալիստական նոր պատերազմի:

Այդ կողոպտիչ պատերազմի նախաձեռնողներն են հանդիսանում Գերմանիայի, Իտալիայի ու Ճապոնիայի ֆաշիստական պետությունները, վորոնք արդեն անցել են հարձակման և իրագործում են իրենց հափշտակողական պլանները, պրովոկացիոն յեղանակով ամբողջ մարդկությանը մղելով դեպի համաշխարհային իմպերիալիստական նոր պատերազմ:

Կողոպտելով և սովկացնելով իրենց սեփական ժողովրդական մասսաներին, ֆաշիստական կառավարությունները ներխուժում են ուրիշի տերիտորիաները:

Ճապոնական միլիտարիստները Մանջուրիան հափշտակելուց հետո, իրենց բանակներն ուղղեցին չին մեծ ժողովրդի դեմ,





ամբողջ Չինաստանը գրավելու և իրենց գաղութը դարձնելու համար:

Հաբեշստանը վերածված է իտալական ֆաշիզմի գաղութի: Իտալո-գերմանական ֆաշիզմի միացյալ ռազմական ուժերը կոտորում են իսպանական հերոս ժողովրդին, ավերում են նրա խաղաղ քաղաքները, նրա մեծագույն կուլտուրական արժեքները:

Գերմանական ֆաշիզմը, վորպես իմպերիալիստական նոր պատերազմի գլխավոր հրձիգ, արդեն հափշտակեց Ավստրիայի ինքնուրույն պետությունը և դեռ այնտեղ ամուր չնստած՝ նա հարձակում է պատրաստում Չեխոսլովակիայի դեմ: Իր գործակալության միջոցով նա ամենուրեք կազմակերպում է դավադրություններ, խռովություններ և ձգտում է հափշտակել Հունգարիան, Լիտվան:

Նա ձեռք է բարձրացնում բալկանյան ժողովուրդների ինքնուրույնության վրա, ձգտում է ճզմել Թյուրքիան, վորպեսզի իրականացնի գերմանական իմպերիալիզմի հին պլանները Բեռլին—Բաղդադ ստրատեգիական գծի վերաբերյալ:

Ֆաշիստական վոճրագործները կատաղաբար բարձրացրել են իրենց գլուխն անդ-

լիական պահպանողականների ու ֆրանսիական ռեակցիոն բուրժուազիայի թողտվության պայմաններում՝ խրախուսվելով նրանց կողմից:

Նրանք պաշտպանում էին գերմանական ֆաշիզմը, հնարավորություն տալով նրան զինվելու:

Նրանք գերմանական ֆաշիզմն օգտագործում են վորպես արյունարբու ժանդարմ միջազգային բանվոր դասակարգի և ժողովուրդների դեմոկրատական շարժման դեմ:

Նրանք խրախուսում են և գաղտագողի նրան ուղղում Խորհուրդների յերկրի դեմ:

Անգլիական պահպանողականների և ֆրանսիական ռեակցիոն բուրժուազիայի կողմից ցուցաբերվող թողտվության ու խրախուսման քաղաքականության հիմքում ընկած են վոչ թե սխալներն ու վրիպումները, այլ ավելի խոր պատճառներ:

Այդ պատճառները պետք է վորոնել միջազգային դրության այն հիմնական փաստի մեջ, վորի նշանակությունը բազմիցս մատնանշել է ընկեր Ստալինը, — կապիտալիզմի և սոցիալիզմի միջև յեղած հակասության մեջ:

Յեվրոպայում տեղի ունեցող վերջին ա-



միսների իրադարձությունները բազմիցս հաստատել են ընկեր Ստալինի ցուցումների խոր ճշմարտացիությունը:

«Ամեն անգամ, յերբ կապիտալիստական հակասություններն սկսում են սրվել, բուրժուազիան իր հայացքն ուղղում է ԽՍՀՄ-ի կողմը — չի կարելի արդյոք կապիտալիզմի այս կամ այն հակասությունը, կամ բոլոր հակասությունները միասին վերցրած՝ լուծել ԽՍՀՄ-ի հաշվին, Խորհուրդների այդ յերկրի՝ հեղափոխության միջնաբերդի հաշվին, վորը հենց միայն իր գոյությամբ հեղափոխականացնում է բանվոր դասակարգն ու գաղութները, խանգարում է նոր պատերազմ կազմակերպելուն, խանգարում է աշխարհը նոր ձևով վերաբաժանելուն, խանգարում է իր ընդարձակ ներքին շուկայում տնօրինություն անելուն, վորն այնչափ անհրաժեշտ է կապիտալիստներին հատկապես այժմ, տնտեսական ճգնաժամի կապակցությամբ»:

Կարելի յե հաստատապես ու վստահորեն ասել, վոր պատերազմի ֆաշիստական հրձիգների քաղաքականությունը, ինչպես նաև նրանց հովանավորողների մանևրները ուղղված են այն նպատակին, վորպեսզի վոր-

ձեն իրենց ներքին հակասությունները լուծել ի հաշիվ Խորհրդային Միության, վորն ամեն կերպ խանգարում ե նրանց սկսելու պատերազմն աշխարհի վերաբաժանման համար:

Բոլորի համար պետք ե ակնհայտ լինի, վոր վերջին տարվա ընթացքում կապիտալիստական պետությունների փոխհարաբերությունները, բանակցությունները բուրժուական յերկրների միջև և պայմանագրերի կնքումն ընթանում են համաշխարհային նոր սպանդի նախորյակին ուժերի վերախմբավորման գծով:

Ավստրիայի հափշտակումը գերմանական ֆաշիզմի կողմից, Չեխոսլովակիա և Միջինեվրոպական մյուս պետությունները ներխուժելու պատրաստությունը, չինական տերիտորիայի մի մասի հեղեղումն ու հափշտակումը ճապոնական զորքերի կողմից, Հաբեշստանի հափշտակումը ֆաշիստական Իտալիայի կողմից և գերմանո-իտալական ինտերվենցիան Իսպանիայում, — պետք ե դիտել վորպես ստրատեգիական դիրքերի գրավում «մեծ պատերազմ» սկսելու համար:

Մինչդեռ ֆաշիստական յերկրները և



բուրժուական դեմոկրատիայի յերկրների ռեակցիոն վերնախավերը պատրաստվում են իմպերիալիստական նոր պատերազմի, աշխարհի բոլոր յերկրներում աճում են ֆաշիզմի ու պատերազմի դեմ պայքարելու ուժերը:

Ավստրիայի հափշտակումը ֆաշիստական Գերմանիայի կողմից և նրա միացումը Գերմանիային՝ արագացրեց հակաֆաշիստական ուժերի միավորման պրոցեսը և պատերազմի դեմ ժողովրդական մասսաների պայքարի ակտիվացումը:

Որեցոր աճում ե միասնության շարժումը բանվոր դասակարգի շարքերում, միասնական հակաֆաշիստական ժողովրդական ճակատ ստեղծելու շարժումը գաղութներում ու կախյալ պետություններում:

Ֆրանսիական ժողովուրդը միասնական ժողովրդական ճակատի հիման վրա մի շարք տարիների ընթացքում հաջողությամբ հետ ե մղում ֆաշիզմի գրոհները և հետեվողականորեն պայքարում ե յերկրի ներսում ֆաշիզմի վտանգի դեմ:

Ֆրանսիայի որինակով, Յեվրոպայի մյուս ժողովուրդները տեսնում են ֆաշիզմի դեմ պայքարի հաջողության հնարավորությունը:

Իսպանական հերոս ժողովուրդը պաշտպանում է խաղաղության գործը, կատաղի պայքար մղելով իտալո-գերմանական ֆաշիզմի ինտերվենցիոնիստական պատերազմների դեմ։ Արդեն երկու տարի է ինչ նա հայրենի երկիրն իր կրծքով պաշտպանում է ֆաշիստական ինտերվենտներից։

Չին մեծ ժողովուրդը միավորված միասնական հակաճապոնական ճակատի մեջ, անկոտրունության, մարտունակության ու արիության օրինակներ է ցույց տալիս պատերազմի ճապոնական հրձիգների դեմ մղվող պայքարում։

Զինված չին ժողովուրդը վերջին ժամանակներս ձեռք է բերում հաղթանակ հաղթանակի հետևից և նա ընդունակ է ճապոնական գիշատիչներին վերջնականապես վռոնդելու չինական տերիտորիայից։

Բուն Անգլիայում աճում է ժողովրդական լայն մասսաների շարժումն ընդդեմ բրիտանական իմպերիալիստների լկտի քաղաքականության՝ Իսպանիայի, Չինաստանի և Ավստրիայի ժողովուրդների բախտի վերաբերմամբ։

Անգլիական աշխատավորների մեջ գնալով ուժեղանում է ֆաշիզմի դեմ միասնական ժողովրդական ճակատի ստեղծման տենդենցը։



Չեխոսլովակիայի ժողովուրդները լայնորեն պատրաստվում են իրենց պետության պաշտպանությանը գերմանական ֆաշիզմի սպառնալիքից։

Ամենուրեք ամրապնդվում է ժողովրդական ճակատի գործը ոչ միայն Եվրոպայում, այլև Ամերիկայում։

Ամբողջ աշխարհի բանվորներն ու գյուղացիները համառ պայքար են մղում ֆաշիզմի դեմ, ԽՍՀՄ-ին սպառնացող պատերազմի վտանգի դեմ։

Գերմանիայի, Իտալիայի, Ճապոնիայի և Լեհաստանի ֆաշիստական երկրներում դրվում են հիմքերը ֆաշիզմի ու պատերազմի դեմ միասնական ժողովրդական ճակատի ստեղծման համար։

Մարդկության ամբողջ առաջադիմական մասը դեմ է ֆաշիզմին ու պատերազմին։ Ամբողջ աշխարհի ժողովրդական մասսաների հայացքները խոր սիրով ու հավատի զգացմունքով ուղղված են դեպի Խորհրդային Միությունը։

ԽՍՀՄ-ը խաղաղության երկիր է, պատերազմի ու ֆաշիզմի դեմ պայքարող հետևողական մարտիկ։

Խորհրդային Միությունը խաղաղության իր քաղաքականությամբ և խաղաղության համար հետևողական պայքարով՝ մերկացնում է պատերազմի փաշիստական հրձիգների մանևրները և արգելակում է համաշխարհային նոր պատերազմի ծավալումը:

Նա հանդես է գալիս վորպես խաղաղության զորեղ գործոն, առաջադիմության գործոն, հաղթանակի գործոն:

Մեր հզոր Բանվորա-Գյուղացիական Կարմիր Բանակը և Ռազմածովային Նավատորմը խաղաղության նեցուկն են:

«Մենք կողմնակից ենք խաղաղության և պաշտպանում ենք խաղաղության գործը, բայց մենք չենք վախենում սպառնալիքներից և պատրաստ ենք հարվածով պատասխանել պատերազմի հրձիգների հարվածին»: (ՍՏԱԼԻՆ): (Բուռն ծափահարություններ):

Խորհրդային Միությունը կանգնած է վորպես գրանիտե ժայռ, վորին զարնվելով փշրվում են կապիտալիստական աշխարհի բոլոր ալիքները:

Խորհրդային մեծ ժողովուրդը պայքարելով հանուն խաղաղության, չի մոռանում կապիտալիստական շրջապատման մասին և պատրաստ է հանճարեղ զորավար մեծ Ստալինի ղեկավարությամբ կատարել իր



պարտքը համաշխարհային պրոլետարիատի հանդեպ, ամբողջ աշխարհի բանվորների ու գյուղացիների հանդեպ՝ իր սոցիալիստական հայրենիքը պաշտպանելու գործում:

1937 թիվը մեր յերկրում բնութագրվում է կուսակցական կազմակերպությունների և աշխատավորական լայն մասսաների բոլշևիկյան զգաստության աննախընթաց աճամբ:

Խորհրդային ժողովուրդը մերկացրեց ու ջախջախեց աջ-տրոցկիստական բանդան և նրանց համագործակիցներին — բուրժուական նացիոնալիստներին, փաշիզմի այդ գործակալներին:

Մերկացված աջ-տրոցկիստական բանդան, վորը հենարան չուներ մեր յերկրի ներսում և ծառայության մեջ եր գտնվում ոտարերկրյա հետախուզությունների մոտ, իրեն նպատակ եր դնում տապալել սոցիալիստական հասարակությունն ու պետական կարգը, վերականգնել ԽՍՀՄ-ում կապիտալիզմն ու բուրժուազիայի իշխանությունը:

Այդ նպատակի համար նրանք միավորել եյին Ուկրաինայի, Բելոռուսիայի, Վրաստանի, Հայաստանի, Ադրբեջանի ու Միջին Ասիական հանրապետությունների տրոցկիստների, աջերի, զինովևականների, մեն-

չևիկների, եսերների, դաշնակների, բուրժուական նացիոնալիստների բոլոր հակախորհրդային ընդհատակյա խմբերը:

Նրանք ձգտում էին ԽՍՀՄ-ի մասնատումը և Վրաստանի, Հայաստանի, Ադրբեջանի ու Միութենական մյուս հանրապետությունների անջատումը ԽՍՀՄ-ից հօգուտ ֆաշիստական և Խորհրդային Միության թշնամի այլ պետությունների:

Նպատակ դնելով Խորհրդային իշխանության տապալումը, նրանք հույս էին դնում բացառապես պատերազմի ֆաշիստական հրձիգների զինված օգնության վրա:

Նրանք օտարերկրյա հետախուզությունների ուղղակի ցուցումներով լրտեսական աշխատանք էին կատարում հօգուտ այդ հետախուզությունների:

Նրանք ի կատար էին ածում վնասարարական ու դիվերսիոն ակտեր, փորձելով հասնել ԽՍՀՄ-ի պարտությանը՝ ֆաշիստական ագրեսորների գալիք հարձակման ժամանակ և ամեն կերպ աշխատում էին ֆաշիստական յերկրների կողմից պատերազմ հրահրել ԽՍՀՄ-ի դեմ:

Նրանք տեռորիստական ակտեր էին ի կատար ածում մեր կուսակցության ու կա-



ռավարության ղեկավարների և մեր յերկրի նշանավոր մարդկանց դեմ:

Մեզ մոտ՝ Հայաստանում աջ—տրոցկիստական յերկերեսանիները սողոսկել էին կուսակցական, խորհրդային զանազան ղեկավար օրգանները և լրտեսական - վնասարարական աշխատանք էին կատարում Խորհրդային Հայաստանի ժողովրդական տնտեսության մեջ:

Այդ աջ - տրոցկիստական դավաճանները կազմակերպում և միավորում էին Խորհրդային իշխանության թշնամի բոլոր տարրերին, դաշնակների, սպեցիֆիկների, եսերների, հնչակների, հակահեղափոխական կուսակցությունների մնացորդները, բուրժուական նացիոնալիստներին և կուլակային տարրերին, Խորհրդային իշխանության դեմ, հայ ժողովրդի դեմ պայքարելու համար:

Ժողովրդի կատաղած անարգ թշնամիների այդ կույտը, վորը չուներ անգամ ամենափոքր կապ ժողովրդի հետ, գյուտ դարձավ օտարերկրյա հետախուզությունների համար և նրանց առաջադրանքներով հրեշավոր վոճրագործություններ էր կազմակերպում հայ ժողովրդի դեմ:

Թշնամիների այդ կույտը հաճույքով հա-

մաձայնվում էր մասնատել Խորհրդային Միությունը և Խորհրդային Հայաստանն անջատել ԽՍՀՄ-ի ժողովուրդների մեծ ընտանիքից ու այն դարձնել իմպերիալիստական յերկրների գաղութը:

Նողկալի մատնիչներին ու հայրենիքի դավաճաններին չհաջողվեց և վոչ վոքի չի հաջողվի հետ շրջել պատմությունը:

Հայաստանի բոլշևիկները մեծ Ստալինի ղեկավարությամբ ու ոգնությամբ մերկացրին և ջախջախեցին լրտեսների, մարդասպանների ու դավաճանների այդ բանդան: (Ծափահարություններ):

Մեր պանծալի խորհրդային հետախուզությունն արմատախիլ արեց աջ – տրոցկիստական մարդասպանների պիծակի բները և կասեցրեց նրանց նենգ դավերը:

Ժողովրդի թշնամիների դեմ մղվող պայքարում մեր կուսակցությունը և ամբողջ խորհրդային ժողովուրդն է՛լ ավելի բարձրացրին Լենինի – Ստալինի մեծ դրոշը, է՛լ ավելի սերտորեն համախմբվեցին Համ. Կ(բ)Կ Կենտրոնական Կոմիտեյի և ժողովուրդների առաջնորդ ընկեր Ստալինի շուրջը է՛լ ավելի կոփեցին իրենց բոլշևիկյան կարգերը և Խորհրդային Միությունը դարձրին սոցիալիզմի անառիկ ամրոց: (Փո-



թորկալի ծափահարություններ. պատգամավորներն ովացիա յեն սարքում ի պատիվ ընկեր ՍՏԱԼԻՆԻ):

Հայաստանի Կոմկուսակցության 10-րդ համագումարի ժամանակվանից անցած մեկ տարին հավերժացավ մեր խորհրդային յերկրի կյանքում կատարված խոշորագույն իրադարձությամբ:

ԽՍՀՄ-ի Ստալինյան Սահմանադրության հիման վրա խորհրդային ժողովուրդը 1937 թվի դեկտեմբերի 12-ին ընտրելով իր Գերագույն Խորհուրդը, ամբողջ աշխարհին ցույց տվեց իր բարոյական ու քաղաքական աննախընթաց միասնությունը:

Նշանակալից փաստ է հանդիսանում այն, վոր ընտրողների 98,6 տոկոսն իրենց ձայները տվին կոմունիստների և անկուսակցականների ստալինյան բլոկի թեկնածուների ոգտին:

90 միլիոն ընտրողներ ձայն տվին բոլշևիկյան կուսակցության ոգտին, Համկ(բ)Կ Ստալինյան Կենտրոնական Կոմիտեյի և Խորհրդային կառավարության կողմից կիրառվող քաղաքականության ոգտին:

Գերագույն Խորհուրդ ուղարկելով իր պատգամավորներին, խորհրդային ժողո-

վուրդը նրանցից պահանջում էր ազնվորեն ու անձնազոհ ծառայել ժողովրդի գործին, պահանջում էր, վոր նրանք մինչև վերջը պայքարեն հանուն կոմունիզմի կառուցման գործի և լինեն անվեհեր՝ մարտում ու անողոք՝ դեպի ժողովրդի թշնամիները:

Յեթե կապիտալիստական յերկրներում վերջին տարիների ընթացքում ուժեղացել է կապիտալիստական սիստեմի ճգնաժամը և սրվել են հակասությունները առանձին պետությունների միջև, ապա մեզ մոտ՝ Խորհրդային Միության մեջ 1937 թիվը բնութագրվում է ամբողջ ժողովրդական տնտեսության բուռն աճմամբ:

1937 թիվը մեր հայրենիքի արտադրողական ուժերի զարգացման բնագավառում ձեռք բերված հոյակապ հաղթանակների տարի յեր:

Արդյունաբերության շատ ճյուղերի գծով ԽՍՀՄ-ն առաջին տեղը դուրս յեկավ Յեվրոպայում:

Խորհրդային Միությունը դարձավ ամենաառաջավոր ինդուստրիալ ու տեխնիկայի յերկիր, ամենաարտադրողական գյուղատնտեսության յերկիր:

1937 թվին յերկիրը կոլտնտեսային դաշ-



տերից ստացավ չտեսնված բերք — յոթը միլիարդ փութ հացահատիկ:

1937 թիվը հանդիսացավ ԽՍՀՄ-ի սոցիալիստական տնտեսության ծաղկման տարի:

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅՈՒՆԸ

Մեծ հաջողություններ են ձեռք բերված սոցիալիստական շինարարության բնագավառում նաև մեզ մոտ՝ Հայաստանում: Հայաստանը հետամնաց յերկրից վերափոխվեց ինդուստրիալ - ագրարային յերկրի: Արդյունաբերական արտադրանքի տեսակարար կշիռը հանրապետության ընդհանուր ժողովրդական տնտեսության մեջ 1937 թվին կազմեց 71,6 տոկոս:

Ստալինյան յերկու հնգամյակների տարիներին Հայաստանի ժողովրդական տնտեսության մեջ ներդրված է 1253 միլիոն ռուբլի, դրանից արդյունաբերական շինարարության մեջ ավելի քան 540 միլիոն ռուբլի կամ հանրապետության մեջ կատարված բոլոր կապիտալ ներդրումների 44 տոկոսը:

Ստեղծված են արդյունաբերության միանգամայն նոր ճյուղեր— մեքենաշինական, քիմիական, տեքստիլ, ծխախոտի, կոնսերվի, մսի, կաթի, կոշկեղենի, ձեթ-օճառի, բամբակազտիչ և այլն:

Հանրապետության էներգետիկ տնտեսությունն անչափ աճել է:

Կառուցվել են մի ամբողջ շարք հիդրոկայաններ. 1937 թվին էլեկտրոէներգիայի մշակումը հավասար էր 235 միլիոն կիլովատ ժամի:

Արդյունաբերության համախառն արտադրանքը 1937 թվին կազմեց 241 միլիոն ռուբլի:

Այս հաջողությունները հանդիսանում են կուսակցության առաջնորդ ընկեր Ստալինի և մեր կուսակցության 17-րդ համագումարի վորոշման կենսագործման արդյունքը, վորտեղ ասված է, վոր՝ «յերկրորդ հնգամյակում արտադրողական ուժերի տեղադրման սահմանվող ծրագիրն ապահովում է ազգային հանրապետությունների ու մարզերի տնտեսական և կուլտուրական հետամնացության վերացումը, արտադրողական ուժերի ավելի համաչափ տեղադրումը և արդյունաբերության մոտեցումը հումքի աղբյուրներին, հիմնական շրջանների մասնագիտացումն ըստ գյուղատնտեսական կուլտուրաների ու ճյուղերի, յերկրի տնտեսական ռայոնացման ավարտումն ամբողջապես»:



Խորհրդային Հայաստանի ինդուստրացման արդյունքները կուսակցության լենին-ստալինյան քաղաքականության մեծագույն հաղթանակն են հանդիսանում:

1938 թվի ժողովրդա-տնտեսական պլանը նախատեսնում է հանրապետական ժողկոմատային արդյունաբերության գծով արդյունաբերական արտադրանքի աճում 1937 թվի համեմատությամբ 26 տոկոսով:

Ժողովրդի թշնամիները չկարողացան կանգնեցնել հայ ժողովրդի հաղթական յերթը, ժողովուրդը, վորը Կոմունիստական կուսակցության և առաջնորդ ընկեր Ստալինի ղեկավարությամբ պատմական հաղթանակներ է ձեռք բերել յերկրի տնտեսական ու քաղաքական վերածնման բնագավառում:

Վճռականորեն վերակառուցելով արդյունաբերության աշխատանքը՝ վնասարարության հետևանքներն ամենաարագ կերպով լիկվիդացիայի յենթարկելու և ստախանովյան շարժումը լայնորեն ծավալելու նշանաբանի տակ, մենք անկասկած կապահովենք 1938 թվին արդյունաբերության առջև կանգնած բոլոր տնտեսական խնդիրների լուծումը:

# ԵՆԵՐԳԵՏԻԿ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՎԻՃԱԿԸ

Ջնայած եներգետիկ տնտեսության հսկայական աճմանը, այնուամենայնիվ մեր արդյունաբերության մեջ ելեկտրոեներգիայի պակաս է զգացվում: Ելեկտրոեներգիայի դեֆիցիտը 1937 թվին կազմում եր95 միլիոն կիլովատ-ժամ, վորը հետևանք եր գոյություն ունեցող կայանների անջատվածության, միացուցիչ ցանցի բացակայության և նրանց փոխադարձ կարգավորման անհնարինության, առանձին կայանների վրա աշխատանքի և ելեկտրոեներգիայի անտնտեսվար ծախսման:

Ելեկտրոեներգիայի մշակության պլանի կատարումը 1937 թվին ըստ առանձին ռայոնական կայանների հետևյալ պատկերն է ներկայացնում.

Ձորագեսը պլանը կատարել է 88,8 տոկոսով:

Առաջին և յերկրորդ Ցերգեսները— 87,9 տոկոսով:

Քանաքեռգեսը պլանը կատարել է 62,1 տոկոսով:

Լենգեսը պլանը կատարել է 101,9 տոկոսով:

Քանաքեռգեսի ուժեղ կերպով հետ մնալը



պետք է բացատրել հաճախակի ավարիաներով: Մեկ տարվա ընթացքում կայանն ունեցել է 41 ավարիա: Դրանից 25-ը սարքավորման ու կատարված կառուցումների թերությունների հետևանքով և 16-ը սպասարկող անձնակազմի վատ աշխատանքի հետևանքով:

1938 թվի առաջին յեռամսյակում, շնորհիվ ձեռք առնված միջոցների, ելեկտրոկայանների աշխատանքը մեծ չափով բարելավվեց և ելեկտրոեներգիայի մշակության պլանը 1938 թվի առաջին չորս ամսում կատարված է 98,4 տոկոսով:

Ձորագեսը և Ցերգեսը թերակատարում են պլանը: Ելեկտրոկայաններում մտցված սիստեմը, աշխատանքի պրոգրեսիվ- մրցանակային վարձատրությունը բարձրացրեց աշխատանքի արտադրողականությունը և իջեցրեց ավարիաների թիվը:

1938 թվի պլանը ելեկտրոեներգիայի մշակության աճում է նախատեսնում 50 տոկոսով, Կիրովականի Քիմիական Կոմբինատի լրացուցիչ վառարանների, ՍԿ-ի նոր ցեխերի գործարկման և Լենինականի տեքստիլ կոմբինատի ընդարձակման կապակցությամբ:

Էլեկտրաէներգիայի աճած պահանջները ծածկելու համար անհրաժեշտ է ամենաարագ կերպով լիկվիդացիայի ենթարկել կայաններում եղած բոլոր թերությունները, որոնք խոչընդոտ են հանդիսանում պլանների կատարմանը, ծավալել պայքարը էներգիայի անտեսավար ծախսման համար և իրացնել էլեկտրակայանների ու ցանցերի աշխատողների՝ 1938 թվին ընկեր Կագանովիչի ղեկավարությամբ տեղի ունեցած Համամիութենական խորհրդակցության որոշումները:

Էլեկտրաէներգիայի աճած պահանջը բավարարելու համար անհրաժեշտ է ապահովել ընթացիկ տարվա մայիսին շահագործման հանձնված՝ Քանաքեռգես—Կիրովական — Ձորագես հաղորդման գծի ճիշտ շահագործումը:

Անհրաժեշտ է արագացնել աշխատանքները Համամլու—Լենինական և Քանաքեռգես-Ջերմագես հաղորդման գծերն ավարտելու ուղղությամբ, որոնք պետք է շահագործման հանձնվեն ընթացիկ տարում:

Այդ կայանների միջև հաղորդման գծերի ժամանակին շահագործման հանձնելը կապահովի արդեն կառուցված բոլոր հիդրոկայանների զուգահեռ աշխատանքը:



Քանաքեռգեսի կարողությունն ավելացնելու համար այս տարի դրված է 5-րդ ագրեգատը՝ 20 հազար կիլովատ ժամ կարողությամբ և այն պետք է շահագործման հանձնվի ընթացիկ տարում, 4-րդ յեռամսյակի սկզբին:

Մինչդեռ 5-րդ ագրեգատի մոնտաժի աշխատանքներն ընթանում են միանգամայն դանդաղ և չեն իրացվում Քանաքեռգեսի շինարարության համար բաց թողնվող միջոցները:

Անհրաժեշտ է ամեն կերպ արագացնել սարքավորման փոխադրումը և այնպես կազմակերպել մոնտաժային աշխատանքները, որպեսզի ընթացիկ տարվա սեպտեմբերի վերջին ագրեգատը շահագործման հանձնվի:

Անբավարար են ընթանում աշխատանքները Սևանի հանգույցի շինարարության մեջ:

Չնայած Սևան-Զանգվի Կասկադի կառուցման համար պետության կողմից բաց թողնված հսկայական միջոցներին, մինչև այժմ դեռևս չկա Սևանա լճի բոլոր ջրային ռեսուրսների ռացիոնալ օգտագործման վերջնական սխեման ու նախագիծը: Սևանի հանգույցի վերջնական նախագծի բացակայությունն անվստահություն է առաջաց-

նում ներկայումս կատարվող աշխատանքների ճշտության նկատմամբ:

ԽՍՀՄ Ծանր արդյունաբերության ժողկոմատի՝ Էներգետիկ տնտեսության գլխավոր վարչությունը (Գլավէներգո) ուսումնասիրում է նասոսային կայանի կառուցման վարյանտին անցնելու նպատակահարմարության հարցը, որը նախնական տվյալներով 48 միլիոն ռուբլու տնտեսում է տալիս գոյություն ունեցող Թունելային վարիանտի համեմատությամբ: Գլավէներգոյի ներկայացուցիչների գալը՝ տեղում մի շարք աշխատանքներ դիտելու համար, մեծապես կհեշտացնի Սևանի հանգույցի շինարարությանը վերաբերվող հարցերի լուծումը:

Չսպասելով կայանին վերաբերվող ընդհանուր հարցերի լուծմանը, կառուցողների և կուսակցական կազմակերպությունների ուշադրությունը պետք է կենտրոնացնել շինարարության մեջ աշխատանքների ճիշտ կազմակերպման վրա և Թունելային աշխատանքները կատարելու ժամանակ՝ ստույգ կերպով պահպանել տեխնիկական անվտանգության պահանջները:



## ՊՂՆՁԻ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ՎԻՃԱԿԸ

Պղնձի արդյունաբերության պլանն Ալավերդու կոմբինատում 1937 թվին հանքաքարի հանույթի գծով կատարված է 120 տոկոսով, ըստ որում թերակատարված է հանքաքարի մեջ պղնձի պարունակության տոկոսը. պղնձի ձուլման պլանը կատարված է 83 տոկոսով:

1938 թվի 4 ամսվա ընթացքում հանքաքարի հանույթի պլանը կատարված է 93 տոկոսով և պղնձի ձուլման պլանը՝ 103 տոկոսով:

Ղափանի կոմբինատում պլանը կատարված է 1937 թվին 52 տոկոսով, իսկ 1938 թվի 4 ամսվա ընթացքում՝ 98,9 տոկոսով:

1937 թվի պլանի այդպիսի անբավարար կատարումը բացատրվում է առաջին հերթին աշխատանքի վատ վերակառուցմամբ և պղնձարդյունաբերության մեջ կատարված վնասարարության հետևանքները լիկվիդացիայի յենթարկելու ուղղությամբ անհրաժեշտ միջոցառումների վոչ բավարար յեռանդուն իրականացմամբ:

1938 թվի սկզբից սկսեցին վերանայվել յերկրաբանական-հետախուզական և հան-

քահորերում կատարվող լեռնա - կապիտալ աշխատանքների պլանները:

Ղափանի հանքերում միայն այս տարվա սկզբից են շահագործման հանձնվել վնասարարների կողմից անգործության մատնված № 1,2,5,7 հանքերը, և դրա հետևանքով 1938 թվի առաջին չորս ամսում բարձրացավ հանքաքարի հանույթի տոկոսը:

1937 թվին հանքաքարի կոնցենտրատի ինքնարժեքի պլանը չկատարեցին ոչ Ղափանի և ոչ էլ Ալավերդու պղնձի կոմբինատները: Մեկ տոնն պղնձի կոնցենտրատի ինքնարժեքը բարձրացել է 51 տոկոսով:

1938 թվի առաջին յեռամսյակում աշխատանքի բարելավման հետևանքով մեկ տոնն պղնձի կոնցենտրատի ինքնարժեքը պլանի համեմատությամբ պակասեց 15 տոկոսով: 1938 թվի առաջին յեռամսյակում դրան համապատասխան բարձրանում է նաև աշխատանքի արտադրողականությունը:

Յերկրաբանական- հետախուզական աշխատանքների վիճակն ինչպես փորման մետրաժի գծով, այնպես և վորակական ցուցանիշների տեսակետից, անբավարար են: Չնայած ՀԿ (բ)Կ Կենտկոմի վորոշմանը՝ կոմբինատների դիրեկցիաների ուշադրությունը հետախուզական աշխատանքների ընդարձակման անհրաժեշտության վրա կենտրոնացնելու մասին, այնուամենայնիվ հետախուզման ասպարեզում առաջին յեռամսյակի պլանները կոմբինատների կողմից չեն կատարվել և այդ կապակցությամբ հանքաքարի աճումը թե Ղափանի և թե Ալավերդու հանքերում միանգամայն աննշան է:

Վատ է իրականացվում յերկրաբանական-հետախուզական աշխատանքների ղեկավարումը դիրեկցիաների և գլխավոր ինժեներների կողմից:

Հետագայում պետք է ամեն կերպ արագացնել յերկրաբանական- հետախուզական լեռնա-կապիտալ աշխատանքները, վորպեսզի 1938 թվին ստեղծվի հանքաքարի արդյունաբերական պաշարների անհրաժեշտ ռեզերվ, վորը հետագայում կարողանա ապահովել պղնձի ձուլման աճումը:

Անհրաժեշտ է ընթացիկ՝ տարում հենց կազմել լեռնային աշխատանքների կոնկրետ պլան, վորն ապահովի նախապատրաստական աշխատանքների առաջ անցնելն առնվազն մեկ տարով:

Կոմբինատների ղեկավարների և կուսակցական կազմակերպությունների անհետաձ-

դեկի խնդիրն է՝ բարելավել անվտանգության տեխնիկայի պայմանները, առաջին հերթին Ալավերդու և Ղափանի պղնձի կոմբինատների հանքահորերի ստորերկրյա աշխատանքների ասպարեզում:

Հարկավոր է կատարել հանքահորերի պատերի խնամքով և հուսալի ամրացում:

Բոլոր հանքահորային վերամբարձները և ստորերկրյա ուղիները պետք է բերել կանոնավոր վիճակի, վերամբարձների համար ավտոբլոկիրովկա կառուցելու ու բալաստիրովկա անցկացնելու և ստորերկրյա ուղիների բազմակալիբրային ռելսները փոխարինելու միջոցով:

Անհրաժեշտ է, վոր կոմբինատների ղեկավարներն անհապաղ միջոցառումներ իրականացնեն հանքահորերում անվտանգության տեխնիկայի պայմաններն ապահովելու ուղղությամբ:

Ալավերդու և Ղափանի ռայոնական կուսկոնֆերանսներում հանդես յեկող ընկերները նշում եյին պղնձի կոմբինատների դիրեկցիաների վատ աշխատանքը պղնձի արդյունաբերության վերաբերյալ ընկեր Կաղանովիչի հրամանի կատարման գործում:



Պղնձի արդյունաբերության աշխատողները պետք է հաշվի առնեն կուսակցական կազմակերպությունների այս նախազգուշացումը և պետք է ընդունեն կոնկրետ պլան՝ ի իրականացումն այդ հրամանի և իսկական պայքար ծավալեն հանուն այդ հրամանի իրականացման: Հայաստանում ի հաշիվ նոր հանքավայրերի հանքային տարածությունների հետագա ընդարձակման նպատակով պետք է հատուկ ուշադրություն դարձնել Ոխչիի հանքավայրի հետախուզմանը: Կատարված հետախուզումները ցույց են տըվել, վոր Ոխչիի պղնձի-մոլիբդենի հանքավայրում կա ոգտակար հանքաքարի հսկայական տարածություն, վորը պղնձի ու մոլիբդենի պաշարների տեսակետից այդ հանքավայրն առաջին տեղերից մեկն է դասվում Միության մեջ:

Ոխչիի հանքավայրի յերկրաբանական պաշարներն արդեն այժմ 15 անգամ գերազանցում են հանքավայրի այն պաշարներից, վորոնք հայտնաբերված են Ալավերդու և Ղափանի հանքավայրերում՝ միասին վերցրած:

Ընթացիկ տարում պետք է շարունակել հետախուզումները, կառուցել դեպի հանքա

վայրը տանող խճուղի և կատարել նախապատրաստական աշխատանքներ 1939 թվին հանքավայրի արդյունաբերական մշակումն սկսելու համար:

Ոխչիի հանքավայրը պետք է դառնա Հայաստանի պղնձի արդյունաբերության ընդարձակման գլխավոր բազան:

## ՔԻՄԻԱԿԱՆ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ՎԻՃԱԿԸ

Հումքի հարուստ աղբյուրների և էժան էլեկտրոէներգիայի առկայությունը Հայաստանում, ամուր բազա յեն ստեղծել հանրապետության մեջ քիմիական արդյունաբերության զարգացման համար:

Վերջին ժամանակներս լայն թափ ստացավ քիմիական արդյունաբերության շինարարությունը: Ստեղծվել են Կիրովականի Քիմիական կոմբինատը, Երևանի կարբիտի գործարանը, Ալավերդու պղնձարջասպի գործարանը և կառուցվում են «ՍԿ Սովպրեն» կոմբինատն ու Ալավերդու ծծմբաթթվուտային գործարանը:

Երևանի ՍԿ «Սովպրեն» կոմբինատի շինարարությունն սկսվել է 1932 թվին: Մինչև 1938 թվի հունվարի 1-ն այդ շինարա-



րության մեջ ներդրված է 111.445 հազար ռուբլի, ըստ որում 1936 թվից սկսած շահագործման են հանձնվել միայն Կարբիտի գործարանը, գլխավոր նվազեցուցիչ կայանը և № 1 յեռթակայանը՝ 49.422 հազար ռուբլու շինարարական արժեքով:

ՍԿ «Սովպրեն» կոմբինատի շինարարության նշանակությունը բոլորին հայտնի յե: Կոմբինատի գործարկումն կապահովի կաուչուկի արտադրությունն էժան հումքից: Կոմբինատի գործարկումով հնարավոր կդառնա զարգացնել մի ամբողջ շարք քիմիական արտադրություններ՝ կոմբինատի արտադրած կաուչուկի վերամշակման բազայի վրա:

Վնասարարները բոլոր ջանքերը գործ եյին դնում, որպեսզի վիժեցնեյին այդ շինարարական աշխատանքների պլանը, ձգձգում եյին առանձին ցեխերի գործարկման ժամկետները:

Կոմբինատը ժամկետին շահագործման հանձնելու հիմնական խոչընդոտներից մեկը՝ հիմնական արտադրական ցեխերի նախագծման ձգձգումն եր: ՍԿ-ի շինարարությունը 6 տարվա ընթացքում մի քանի անգամ վերանախագծվել է: Նախագծման վը-

րա արդեն ծախսված է մոտ 6,5 միլիոն
ռուբլի: Ներկայումս նախագծման աշ-
պարիկում դրությունը դեռ կարգա-
վորված չէ: «Գիպրոկաուչուկը» սիս-
տեմատիկաբար վիժեցնում է նախագծերը
ներկայացնելու ժամկետները և դրանց բա-
ցակայության հետևանքով մինչև այժմ
տրված չեն սարքավորման պատվերները:

Կենտկոմի պահանջով ԽՍՀՄ մեքենաշինա-
կան արդյունաբերության ժողկոմ ընկ. Բր-
ուսկինը մեզ մոտ է ուղարկել պատասխա-
նատու մի հանձնաժողով: Ներկայումս այդ
հանձնաժողովը ծանոթանում է շինարարու-
թյան վիճակի հետ և այդ շինարարությա-
նը վերաբերվող բոլոր հարցերը կլուծվեն
տեղում:

Կառուցողների կադրերը շինարարության
բոլոր գլխավոր տեղամասերում համարյա
լրիվին նորոգված են: Ղեկավար աշխատան-
քի յեն առաջ քաշվել մի շարք ստախանովա-
կաններ ու յերիտասարդ ինժեներներ: Վոր-
պես կարբիդի գործարանի պետ աշխատում
է ստախանովական ընկ. Մանուկ Ուլոյանը:
Օժանդակ ձեռնարկությունների ցեխի պետ
է առաջ քաշվել ստախանովական ընկ. Ս.
Հարությունյանը: Կարբիտի վառարանների



պետի օգնական է առաջ քաշվել Ս. Համբար-
ձումյանը, քլորի խմբի վարիչ՝ ընկ. Հով-
հաննիսյանը և մի ամբողջ շարք այլ աշխա-
տողներ:

Անհրաժեշտ է, վոր մենք ձեռք առնենք
բոլոր միջոցները, վորպեսզի մինչև ընթա-
ցիկ տարվա վերջն ավարտենք բոլոր շինա-
րարական մոնտաժային աշխատանքները,
դրանով իսկ ապահովելով գործարանի գոր-
ծարկումը նշված ժամկետին:

Դանդաղ է ընթանում Կիրովականի քի-
միական կոմբինատի շինարարությունը:

Այդ կոմբինատի շինարարությունը կա-
տարվում եր չափազանց դանդաղորեն, վորի
հետևանքով, չնայած կապիտալ ներդրում-
ների մեծ ծավալին, չկարողացան մասամբ
շահագործման հանձնել առանձին ցեխերը:

1938 թվին անհրաժեշտ միջոցներ են բաց
թողնված կարբիդի 3-րդ վառարանի կա-
ռուցման համար, վորը պետք է շահագործ-
ման հանձնվի ընթացիկ տարում: Այս տարի
յել հենց պետք է շահագործման հանձնվեն
կրի հինգ վառարաններն ու մի քանի օժան-
դակ ցեխեր:

Անհրաժեշտ է, վոր Հայաստանի Ժողկոմ-
խորհն անհապաղ ձեռնամուխ լինի Կիրովա-

կանի քիմիական կոմբինատի արտադրանքի
թաղայի վրա արհեստական մետաքսի գոր-
ծարանի կառուցման հարցի մշակմանը:

## ՏԵՔՍՏԻԼ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ՎԻՃԱԿԸ

Լենինականի Տեքստիլ կոմբինատը 1937 թվի պլանը կատարել է մանարանի գծով՝ 77,2 տոկոսով և գործվածքեղենի գործարանի գծով՝ 66,6 տոկոսով: Խախտվել է նաև արտադրանքի ասորտիմենտը. այսպես օրինակ՝ 1937 թվին առաջին տեսակի բյազի 99 տոկոսի փոխարեն արտադրված է եղել միայն 65 տոկոս:

1938 թվի առաջին յեռամսյակի պլանը կատարված է մանվածքի գծով՝ 75,4 տոկոսով և գործվածքի գծով 74,5 տոկոսով:

Պլանի թերակատարման հիմնական պատճառներն են՝ սարքավորման անբավարար վիճակը՝ վատ նորոգման հետևանքով, ոդափոխման և խոնավեցուցիչ սիստեմի վատ վիճակը, խոտանի մեծ տոկոսը գործարանի նախապատրաստական բաժիններում, ընդհատումները էլեկտրոէներգիայի մատակարարման մեջ և արտադրության վատ ղեկավարումը վարչա-տեխնիկական անձնակազ-



մի կողմից: Վորակյալ բանվորական ուժի և ինժեներա-տեխնիկական անձնակազմի պակասը նույնպես ազդեց պլանի կատարման վրա:

Լենինականի Տեքստիլ կոմբինատի շինարարությունն ընթանում է նույնպես աննորմալ: Վերջին տարիների ընթացքում շինարարությանը հատկացված միջոցները չեյին իրացվում: Ընթացիկ տարում շինարարությունն ընթանում է նույնպես անբավարար: Լենինականի տեքստիլշինը կապիտալ ներդրումների 1937 թվի պլանը կատարել է 57,8 տոկոսով, այսինքն պակաս է իրացվել 8 միլիոն ռուբլի: Զուտ շինարարության պլանը կատարված է 90,6 տոկոսով: Թերակատարումը գլխավորապես տեղի յե ունենում մոնտաժի ու սարքավորման գծով, վորը հետևանք է սարքավորման վոչ կոմպլեկտային ներմուծման. հաճախ դազգյահներն ըստացվել են առանց պրիբորների ու մոտորների, կամ ընդհակառակը՝ պրիբորներն ու մոտորներն ստացվել են առանց մեքենաների ու դազգյահների:

1938 թվին Լենինականի տեքստիլ շինարարության գծով կատարվելիք կապիտալ ներդրումները կազմում են 23.580 հազար

ռուբլի։ Ընթացիկ տարում պետք է ավարտվի մանվածքային ու գործվածքային կորպուսների, 7 բնակելի տների կառուցումը՝ 3.900 հազար ռուբլի արժողությամբ, նաև մի ամբողջ շարք օժանդակ կառուցումների շինարարությունը։

1938 թվի առաջին յեռամսյակի պլանը կապիտալ ներդրումների գծով կատարված է 147 տոկոսով։

Պետք է նշել, որ 1938 թվի առաջին յեռամսյակի կապիտալ ներդրումների պլանի գերակատարման հետ միասին Լենտեքստիլշինը չկատարեց ինքնարժեքի իջեցման պետական առաջադրանքը. առաջադրված 7,1 տոկոս իջեցման փոխարեն մենք ունենք թանկացում 1,9 տոկոսով։

Տեքստիլ կոմբինատում կան բոլոր պայմանները պլանների կատարման համար։ Լենինականի բոլշևիկները պետք է բոլոր ջանքերը գործադրեն, որպեսզի 1938 թվին ավարտեն և շահագործման հանձնեն մանվածքային ու գործվածքային կորպուսները, կատարեն բյուջեի և թելի արտադրության պետական առաջադրանքները, ապահովելով ոչ միայն քանակական այլև որակական ցուցանիշները։



## ՅԵՐԿԱԹՈՒՂԱՅԻՆ ՏՐԱՆՍՊՈՐՏԻ ՎԻՃԱԿԸ

Յերկաթուղային տրանսպորտի աշխատանքի մեջ ընթացիկ տարում պետք է նշել ըզգալի բարելավում։

Որական միջին բեռնման պլանը 1937 թըվին կատարվել է 147 տոկոսով, բեռնաթափման պլանը՝ 146 տոկոսով։ 1938 թվի առաջին յեռամսյակում բեռնման պլանը կատարված է 170 տոկոսով և բեռնաթափման պլանը՝ 150 տոկոսով։

Չնայած պլանի քանակական կատարմանը, հետ են մնում որակական ցուցանիշները։ Վագոնների շրջապտույտի պլանը կատարված է 84 տոկոսով։ Շոգեքարշի օրական միջին վազքի պլանը կատարված է 83 տոկոսով։

Կուսակցության և կառավարության առաջադրանքն ամբողջօրյա բեռնման ու բեռնաթափման մասին կատարվում է ոչ բոլոր կայարանների կողմից։ Շատ տնտեսական կազմակերպություններ գերադասում են տուգանքներ վճարել վագոնները պարապ կանգնեցնելու համար, քան թե ժամանակին բեռնել ու բեռնաթափել դրանք։ 1938 թվի 4 ամսվա ընթացքում միայն Յերևան և Արա-

րատ կայարաններում տնտեսական կազմակերպությունները տուգանք են վճարել ավելի քան հարյուր հազար ռուբլի: Տուգանք վճարելու մեջ հատկապես աչքի յեն ընկնում Հայկոոպը, Ձեթ-Օճառի գործարանը, Ցեմենտի գործարանը և ՍԿ—«Սովպրենը»:

Անհրաժեշտ է վերջ դնել առանձին տնտեսական կազմակերպությունների վատ աշխատանքի հետևանքով պետական միջոցների վատնմանը: Ապրանքների բեռնման ու բեռնաթափման ասպարեզում կայարանների ամբողջորյա աշխատանքի վիժեցման համար տնտեսական կազմակերպությունների ղեկավարները պետք է պատասխան տան վորպես յերկաթուղու աշխատանքի վիժեցում:

Մեր յերկաթուղային կազմակերպությունները պետք է ուժեղացնեն իրենց աշխատանքը և ամենամոտիկ ժամանակում հասնեն վորակական ցուցանիշների բարելավմանը:

ՀԿ(բ)Կ Կենտրոնական Կոմիտեն հարց դըրեց ԽՍՀՄ-ի Հաղորդակցության ճանապարհների ժողկոմատի առաջ յերկաթուղու Լենինականի բաժանմունքի ճանապարհային տնտեսությունն առողջացնելու մասին: Լենինականի բաժանմունքի յերկաթուղային-





ները պետք է հասնեն ավարիաների, խոտակումների և իրենց աշխատանքի մեջ, խոտանի լիակատար վերացման:

Հարկավոր է վճռականորեն բարձրացնել աշխատանքային կարգապահությունը յերկաթուղում: Յերկաթուղամերձ շրջանների կուսակցական կազմակերպությունները պետք է մշտական օգնություն ցույց տան և յերկաթուղու աշխատանքը դիտեն վորպես պետական կարևոր առաջադրանք:

## ՇԻՆԱՆՅՈՒԹԵՐԻ ՄԱՍԻՆ

Հայտնի յե, վոր Հայաստանն ունի բարձրորակ շինանյութերի հարուստ հումքային ռեսուրսներ, ինչպես որինակ՝ տուֆ, մարմար, գրանիտ, պեմզա, դիատոմիտ, ցեմենտի հումք և այլն:

Տեղական արդյունաբերության ժողկոմատը և մյուս կազմակերպությունները հարկ յեղած չափով չեն ծավալել աշխատանքը շինարարություններն ինչպես քանակական, այնպես և վորակական տեսակետից բնական շինանյութերով ապահովելու ուղղությամբ: 1937 թվի պլանը շինանյութեր արտադրող մի շարք ձեռնարկությունների գծով թերակատարվել է: Արթիկ-տուֆը տարեկան պլանը կատարել է 64,7 տոկոսով, Հայմար-

մարը՝ 79,7 տոկոսով, Գրանիտի ֆաբրիկան՝ 36,8 տոկոսով, Ցեմենտի գործարանը՝ 59 տոկոսով, Հայարդխորհրդի շինանյութերի գծով՝ 73 տոկոսով:

Մասնանշված ձեռնարկությունները հետ են մնում նաև 1938 թվի առաջին յեռամսյակում․ Արթիկ-տուֆը պլանը կատարել է 40 տոկոսով, Հայմարմարը՝ 63,1 տոկոսով, Հայպեմզան՝ 62 տոկոսով, Հայարդխորհրդի շինանյութերի գծով՝ 65,5 տոկոսով, Ցեմենտի գործարանը՝ 36 տոկոսով:

Պլանի թերակատարման հիմնական պատճառներն են հանդիսանում արտադրության պրոցեսների վոչ բավարար մեքենայացումը, գոյություն ունեցող մեխանիզմների վոչ ռացիոնալ ոգտագործումը: Արթիկ-տուֆում 21 հորատող մեքենաներից ոգտագործվում են 10—12 մեքենա: Անի-պեմզայում էկսկավատորն օրվա ընթացքում բեռնավորված է լինում 2—3 ժամով: Գրանիտի ֆաբրիկայում քար ջարդող մեքենաներն ոգտագործվում են առավելագույնը 40 տոկոսով: Մարմարի քարհանքերում կոմպրեսորներն ոգտագործվում են 40 տոկոսով:

Պլանների կատարման վրա բացասաբար անդրադարձավ նաև քարհանքային տնտե-



սության անկանոն վիճակը․ Հայմարմարի, Գրանիտի ֆաբրիկայի, Ցեմենտի գործարանի շատ քարհանքերում շահագործումը կատարվում է առանց լեռնային մշակության տեխնիկական նախագծերի: Բացակայում է Տեղական արդյունաբերության ժողկոմատի և այլ կազմակերպությունների կոնկրետ ու ոպերատիվ ղեկավարությունը շինանյութեր արտադրող ձեռնարկությունների նկատմամբ:

Շինանյութերի արտադրանքի ինքնարժեքը Տեղական արդյունաբերության ժողկոմատի գծով վոչ միայն չի իջեցվել 27 տոկոսով, այլև ընդհակառակը՝ բարձրացել է 16 տոկոսով:

Ինքնարժեքի թանկացման հիմնական պատճառներն են հանդիսանում — պլանների ընդգալի թերակատարումը, արտադրանքի խոտանի բարձր տոկոսը՝ հատկապես մարմարի և գրանիտի գծով, պահանջվող ասորտիմենտին չհամապատասխանող արտադրանք տալը, ստանդարտի բացակայությունը, օրինակ՝ Հայարդխորհրդի քարհանքերում:

Շինանյութերի բաց թողնվող արտադրանքը տեղում անբավարար է մշակվում, վորի հետևանքով շինարարական հրապարակնե-

րում անհրաժեշտ է լինում լրացուցիչ աշխատանք կատարել տաշելու ուղղությամբ, որն առաջ է բերում շինարարության թանկացում և տրանսպորտի ավելորդ բեռնավորում:

Շինանյութերի արտադրության հետագա ընդարձակման և նրանց որակի բարելավման նպատակով անհրաժեշտ է Տեղական արդյունաբերության ժողկոմատն ընդարձակի գունավոր շինարարական ու դեկորատիվ տուֆերի արտադրությունը, ավելացնի գրանիտի հանույթն ի հաշիվ դույների՝ Մեղրիում և Այրումում, ավելացնի Արարատի ու Խորվիրապի հանքավայրերի մարմարի և Աղվերանի ու Արզաքյանդի հանքավայրերի տեխնիկական մարմարի հանույթը:

Անհրաժեշտ է, որ Տեղական արդյունաբերության ժողկոմատը նախապատրաստի Ախտայի մերգելների և ՍԿ—«Սովպրենի» կարբիդային կրի մնացորդների բազայի վրա յերկու ցեմենտի գործարանների կառուցման հարցը:

Ծածկանյութերի դեֆիցիտը վերացնելու համար անհրաժեշտ է, որ Տեղական արդյունաբերության ժողկոմատը և Հայարդխորհուրդն ընդարձակեն կղմինտրի ար-



տադրությունը, որի համար անհրաժեշտ է ավարտել Կիրովականի, Դիլիջանի, Լենինականի և Բասարգեչարի գործարանների վերակառուցումը, 1939 թվի սկզբին նրանց կարողությունը հասցնելով մինչև յերեք միլիոն կղմինդրի, ինչպես նաև 1938-39 թըվականներին ձեռնարկել նոր գործարանների կառուցմանը — Յերևան քաղաքում՝ յերկու միլիոն կղմինդրի արտադրական կարողությամբ, Փարաքարում, Ալավերդու, Արթիկի, Ապարանի, Գորիսի, Ախտայի, Ամասիայի և Վեդու շրջաններում, յուրաքանչյուրը մինչև 500 հազար կղմինդրի արտադրական կարողությամբ:

Անհրաժեշտ է, որ Հայարդխորհուրդը և Տեղական արդյունաբերության ժողկոմատն ամենամոտիկ ժամանակներս կարգի բերեն քարհանքները, մեքենայացման հանույթն ու առաջին հերթին ոգտագործեն յեղած մեխանիզմները և ապահովեն բաց թողնվող արտադրանքի ասորտիմենտը, որակն ու ստանդարտը:

Արարատի Ցեմենտի գործարանն ունենալով բոլոր պայմաններն արտադրական ծրագրի կատարման համար, ունենալով բարձրորակ հումք և բավականաչափ զինված լի-

նելով տեխնիկապես, սիստեմատիկաբար թերակատարում է պլանները, վորով մեծ վնաս է պատճառում շինարարական օբյեկտներին:

Գործարանի վատ աշխատանքի հիմնական մոմենտներն են հանդիսանում աշխատանքի վատ կազմակերպումը, բանվորների կենցաղային պայմանների անկանոնությունը և աշխատանքային թույլ կարգապահությունը: Անհրաժեշտ է, վոր Վեդու շրջկոմն ու գործարանի կոլեկտիվը վճռական միջոցներ ձեռք առնեն՝ յեղած բոլոր թերությունները վերացնելու համար, մինչև վերջ կատարեն ընկ. Լ. Մ. Կագանովիչի հրամանը ցեմենտի արդյունաբերության վերաբերյալ և ապահովեն 1938 թվի պլանի կատարումն այդչափ կարևոր բնագավառում:

Հայկական ԽՍՀ Տեղական արդյունաբերության ժողկոմատը և Արհեստագործական կոոպերացիան մինչև այժմ ընդհուպ չեն մոտեցել ՀամԿ(բ)Կ Կենտկոմի 17-րդ համագումարի վորոշման իրացմանը՝ լայն սպառման առարկաների արտադրությունն ամեն կերպ զարգացնելու մասին, չնայած, վոր մենք ունենք հումքային ռեսուրսներ և արդյունաբերության ոգտակար մնացորդներ: Այլապես՝ չի կարելի բացատրել այն դրությունը, վոր լայն սպառման առարկաների արտադրանքը՝ Տեղական արդյունաբերության ժողկոմատի հանրապետական արդյունաբերության գծով կազմում է 2,2 տոկոս, իսկ Քաղխորհրդի գծով Տեղական արդյունաբերության հետ միասին վերցրած, լայն սպառման առարկաների արտադրանքը կազմում է 13,8 տոկոս:



Անհրաժեշտ է, վոր Տեղական արդյունաբերության ժողկոմատն ավելի յեռանդուն կերպով ձեռնամուխ լինի լայն սպառման առարկաների արտադրության կազմակերպմանը. Դսեղի հրակայուն տեսակների և Կիրովականի տեղական կավերի բազայի վրա պետք է կազմակերպել հախճապակյա-ճենապակյա իրերի, Ջրմուղի ու կոյուղու խողովակների, մետլախյան չերտաթերթերի և այլնի արտադրությունը:

Անհրաժեշտ է ընդարձակել լայն սպառման առարկաների արտադրության ծրագիրը Յերևանի ու Լենինականի մեխանիկական գործարանում, այն հաշվով, վոր արտադրվի լայն սպառման մետաղյա առարկաների լայն ասորտիմենտ,— ելեկտրոհաշվիչներ, Ջրաչափեր, Ֆիտտինգներ, մեխեր, չու

բույներ, մանճակալներ, եմալապատ ամանեղեն և գյուղատնտեսական ու տնային գործածության այլ մետաղյա իրեր:

ՀԿ(բ)Կ Կենտկոմի բյուրոն 1938 թվի ապրիլի իր վորոշմամբ կոնկրետ ցուցումներ տվեց Հայարդխորհրդին՝ լայն սպառման ապրանքների արտադրությունն ընդարձակելու մասին բրուտային, մետաղյա ու մարմարե իրերի գծով, կաշվեղենի- գալանտերեայի, չուգունից ձուլված ու շտամպային եմալապատ ամանեղենի, մանճակալների ու մետաղների արտադրության գծով, Ն. Սեբաստիայում և Արաբկիրում մետաքսագործական ու տրիկոտաժային արտադրությունը և լեռնային ու նախալեռնային շրջաններում գորգագործությունն ընդարձակելու, ինչպես նաև տնային գործածության մի շարք այլ առարկաների ու տնտեսական ինվենտարի արտադրությունն ընդարձակելու գծով:

ՀԿ(բ)Կ Կենտկոմի կողմից նշված ձեռնարկումները նվազագույն ու առաջնահերթ ձեռնարկումներ են: Անհրաժեշտ է, վոր Հայարդխորհուրդը միջոցներ ձեռք առնի նշված ծրագրի կատարման և լայն սպառման առարկաների արտադրության հետագա ըն-



դարձակման ուղղությամբ: Արհեստագործական կոոպերացիայի արտադրության ընդարձակման ժամանակ հատկապես պետք է ուշադրություն դարձնել ադրբեջանական բնակչություն ունեցող շրջանների վրա:

## ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆ

Անցնում եմ Հայաստանի գյուղատնտեսության վիճակի և կոլտնտեսային շինարարության հարցերին:

Ամբողջ ցանքի տարածությունը դաշտավարության գծով 1938 թվին կազմում է 435·680 հեկտար, այդ տարածության 95,6 տոկոսը գտնվում է հանրայնացված հատվածում:

Կոլտնտեսությունների ցանքի տարածությունը 1938 թվին ավելացավ 22 հազար հեկտարով՝ 1937 թվի տարածության համեմատությամբ:

Հացահատիկային կուլտուրաների տարածությունը կազմում է 356·190 հեկտար: Տարեց տարի աճում է հացահատիկային կուլտուրաների տարածությունը:

Հացահատիկային կուլտուրաների միջին բերքատվությունը յուրաքանչյուր հեկտարից 1935 թ. կազմում էր 8 ցենտներ, 1937

թվին՝ 9,3 ցենտներ. ինչպես երևում է այս թվերից, միջին բերքատվությունը հանրապետության մեջ տարեց-տարի աճում է, բայց այնուամենայնիվ բերքատվության պլանային առաջադրանքները կատարված են վոչ 1935 թվին, վոչ 1936 և վոչ էլ 1937 թվին:

Առանձին շրջաններում բերքատվությունը վնասարարական հերկի, ցանքի ու բերքահավաքի հետևանքով մեծապես հետ է մնում հանրապետության միջին բերքատվությունից — Գորիսի շրջանում՝ 7,8 ցենտներ, Իջևանի շրջանում՝ 5,9 ցենտներ, Դիլիջանի շրջանում՝ 6,4 ցենտներ, Ապարանի շրջանում՝ 7,4 ցենտներ, Ղափանի շրջանում՝ 6 ցենտներ և այլն:

Այս տարի պլանային բերքատվությունը հանրապետության մեջ սահմանված է հեկտարից 11,2 ցենտներ:

Այդ առաջադրանքը միանգամայն ռեալ է և լավ աշխատանքի դեպքում այն կարող է գերակատարվել:

Մեր շրջանային կուսակցական կազմակերպությունների խնդիրն է՝ իսկական բոլշևիկյան պայքար կազմակերպել ընթացիկ տարում յուրաքանչյուր հեկտարից անցյալ



տարվա համեմատությամբ առնվազն 1,9 ցենտներ ավելի բերք ստանալու համար:

Այդ խնդրի լուծման համար, հարկավոր էր ցանքն անցկացնել սեղմ ժամկետներում:

1938 թվի գարնանային աշխատանքներն սկսվեցին ավելի ուշ, նկատի ունենալով գարնան ուշ բացվելը:

Հացահատիկային կուլտուրաների ցանքն ավարտվեց անցյալ տարվա համեմատությամբ շատ ավելի շուտ, բայց այնուամենայնիվ շրջանների մեծ մասը չպահպանեց ցանքը 7–8 աշխատանքային որում կատարելու՝ կառավարության կողմից սահմանված ժամկետը:

Ցանքն անթույլատրելի կերպով ձգձգեցին այնպիսի շրջաններ, ինչպես՝ Ախտան, Սևանը, Ապարանը, Ամասիան, Կոտայքը, չընայած վոր այս տարի նրանք ունեյին բոլոր պայմանները, ինչպես տրակտորային պարկի աճման, այնպես և կոլտնտեսությունների ներքին հնարավորությունների տեսակետից, ցանքը կառավարության կողմից նշված ժամկետին կատարելու համար:

Այդ շրջաններում ցանքի աշխատանքները վատ կազմակերպվելու պատճառով հանրա-

պետության մեջ ձգձգվեց ցանքի ավարտումը:

Այդ հետ մնացող շրջանների ղեկավարները վատ էին կապված կոլտնտեսությունների հետ, ժամանակին չկատարեցին գարնանը նախապատրաստվելու վերաբերյալ Հայաստանի Կ(բ)Կ Կենտկոմի վորոշմամբ նշված ձեռնարկումները:

Նստել էին գրասենյակում և տեղեկություն չունեյին, թե կոլտնտեսություններն ինչպես են պատրաստվում գարնանը:

Այդպիսի ղեկավարների մասին ընկեր Ստալինն ասում է. «Նստած են մարդիկ գրասենյակներում և ինքնագոհ ճռճռացնում են գրիչները, առանց նկատելու, վոր կոլտնտեսությունների զարգացումն ընթանում է բյուրոկրատիկ գրասենյակների կողքով»:

Դրա հետ միասին մի ամբողջ շարք շրջաններ լավ նախապատրաստեցին ու կազմակերպված անցկացրին ցանքի աշխատանքները և նշված ժամկետին ավարտեցին ցանքը՝ տալով ցանքի կատարման վորակական բարձր ցուցանիշներ:

Հատկապես աչքի ընկան Վաղարշապատի,



Ալինի, Հոկտեմբերյանի, Ստեփանավանի և այլ շրջանների կոլտնտեսությունները:

Այսպես օրինակ Վաղարշապատի շրջանի Հայթաղի կոլտնտեսությունը (կոլտնտեսության նախագահ՝ Սուրեն Մովսիսյան) գարնանացանն սկսեց ապրիլի 13-ին, ավարտեց ապրիլի 20-ին: Յոթն օրվա ընթացքում կոլտնտեսությունը ցանեց 150 հեկտար բամբակ, 10 հեկտար գարի և 6 հեկտար բանջարանոցային կուլտուրաներ:

Բոլոր ցանքերի մշակումը կատարված է վորակապես լավ, վորի մասին վկայում են դաշտերի հավասար ծիլերը:

Մինչև մայիսի 8-ը կոլտնտեսությունը լիովին մշակեց 24 հեկտար խաղողի ու պտղատու այգիներ և տնկեց 22 հեկտար նոր խաղողի այգիներ:

Կոլտնտեսությունը կարողացավ հասնել այդ ցուցանիշներին, վորովհետև ժամանակին, դեռևս ձմեռը վերանորոգել էր ամբողջ ինվենտարը, բանող անասուններին լավ կերակրել էր: Ցանքի ժամանակ բոլոր կոլտնտեսականները գտնվում էին դաշտում և աշխատանքն սկսում էին վաղ ա-

ռավորյան: Վարչությունն ապահովեց կոլտնտեսականների 100 տոկոսով աշխատանքի դուրս գալը և ճիշտ դասավորեց կոլտնտեսականներին ըստ բրիգադների: Կազմակերպել էյին տրակտորիստների և կոլտնտեսականների սնունդն ու կուլտուրական սպասարկումը դաշտում:

Մի քանի խոսք այս տարվա գարնանացանի վորակի մասին:

Գարնանացանի վորակն անցյալ տարվա համեմատությամբ ավելի լավ է: Բայց այնուամենայնիվ մի շարք շրջաններում, օրինակ՝ Մարտունու, Կոտայքի, Ապարանի, Ամասիայի շրջաններում թույլ են տվել վոչ կոնդիցիոն սերմացվով կատարվող ցանք, խախտել են ագրոկանոնները, թույլ են տվել ծանծաղ հերկ, կամ չհերկված տեղեր, վորոշ հողամասերում սերմացուն վատ է ծածկված:

Այդ շրջաններում կուսկազմակերպությունները կոլտնտեսային ակտիվի հետ միասին պետք է կազմակերպեն դաշտերի խնամքով մշակումը, ժամանակին ու անկորուստ բերքահավաքը, վորպեսզի դրանով իսկ հասնեն յուրաքանչյուր հեկտարից ստացվելիք բերքի առաջադրանքի անպայման կատարման:



Սերմացվի գործը Հայաստանում գտնվում էր բացառիկ կերպով խճճված վիճակում:

Ժողովրդի թշնամիները սողոսկելով հողային օրգանները բոլոր ուժերը գործ էյին դրել, վորպեսզի խանգարեն տեսակավոր սերմացվով կատարվող ցանքերին անցնելը:

Մինչև այժմ մենք չունենք շրջանների համար սահմանված՝ ցորենի ստանդարտ տեսակներ, բացի ուկրաինկայից:

Ապրոբացիան 1937 թվին մի շարք շրջաններում՝ Աշտարակի, Կիրովականի, անց է կացված մեծ սխալներով:

Շատ շրջաններում ապրոբացիան վերջացնելուց հետո չեն հետևել կալմանը և թույլ են տվել տեսակավոր հացահատիկի խառնելը տեղական բարելավված տեսակների հետ, դրանով իսկ զրոյի յեն հավասարեցրել իրենց աշխատանքը շրջանին տեսակավոր սերմերով ապահովելու ուղղությամբ:

Մի քանի մթերակայաններում տեղյակ չեն դարձրել տեսակավոր ցանքերի ընդունելության կարգի մասին, կորցրել են տեսակավոր վկայականները, չեն վճարել տեսակավոր սերմացու հանձնելու դեպքում կոլտնտեսություններին հասանելիք օրինական հավելումները:

Վատ է աշխատել նաև Լենինականի սելեկցիոն կայանը:

Հացահատիկային կուլտուրաների ապրոբացիայի արդյունքները 1937 թվին ցույց տվին, վոր տեսակավոր ու բարելավված սերմացվով կատարված 58.083 հեկտար տարածությունից կոնդիցիոն ցանքեր են յեղել միայն 27.495 հեկտար տարածության վրա:

Այս տարվա մայիսին Միության Ժողկոմխորհի և ՀամԿ(բ)Կ Կենտկոմի վորոշման համաձայն կատարված հացահատիկային կուլտուրաների տեսակավոր դոկումենտացիայի արդյունքները ցույց են տալիս, վոր Հայաստանում մենք ընդամենն ունենք աշնանացան տեսակավոր ցանքեր 62 հազար հեկտար և գարնանացան՝ 56 հազար հեկտար:

Յես մանրամասն կանգ առա այդ հարցի վրա, վորովհետև Հայաստանի գյուղատնտեսության և մեր կոլտնտեսությունների համար մեծ նշանակություն ունի ցանքերի փոխադրումը ստանդարտ տեսակների, վորոնք ավելացնում են հացահատիկային կուլտուրաների բերքատվությունը և բարձրացնում են կոլտնտեսությունների յեկամտաբերությունը: Ուստի կուսկազմակերպությունները պետք է հատուկ հսկողության





տակ առնեն բոլոր տեսակավոր ցանքերը, ապրոբացիայի յենթարկեն դրանք, պահեն առանձին, ապահովեն նրանց կանոնավոր վիճակում պահելը ինչպես կոլտնտեսային ամբարներում, այնպես և Զագոտզեռնոյի կայաններում, վորպեսզի յեկող տարի ամբողջ տեսակավոր ու բարելավված սերմացուն օգտագործվի ցանքի համար:

Ընթացիկ տարում մենք բամբակի ցանքն ավարտեցինք տասն օրով ավելի շուտ, քան 1937 թվին:

Բամբակի ցանքերի տարածությունն այս տարի կազմում է 17 հազար հեկտար: Դրանից 16.500 հեկտարը կոլտնտեսություններում և 500 հեկտարը մենատնտեսների տնտեսություններում:

Ընթացիկ տարվա պլանով բերքատվությունը սահմանված է յուրաքանչյուր հեկտարից 11,6 ցենտներ, փաստացի բերքատվությունը պետք է լինի շատ ավելի բարձր:

Հեկտարից ստացվելիք բերքատվության պլանը գերակատարելու համար կուսակցությունը և կառավարությունը կոլտնտեսականներին հնարավորություն են տալիս ստանալու հսկայական չափով մրցանակ-հավելումներ:

Վաղ ցանքը դեռևս չի ապահովում բարձր բերք ստանալը: Բարձր բերք ստանալու համար հարկավոր է ժամանակին մշակել բամբակի դաշտերը և ժամանակին կատարել վեգետացիոն ջրումը:

Բամբակացան շրջանների կուսակցական կազմակերպությունները պետք է կոլտնտեսականներին պայքարի կազմակերպեն մշակման բարձր վորակի, բամբակենին գյուղատնտեսական կուլտուրաների վնասատուներից ժամանակին բուժելու համար:

1938 թվին շաքարի ճակնդեղի ցանքի տարածությունը կազմում է հազար հեկտար: Դյուղքենդի շրջանում ճակնդեղի աճման պայմանները բացառիկ կերպով լավ են:

Մենք պետք է տարեց-տարի ավելացնենք շաքարի ճակնդեղի ցանքերի տարածությունը և մինչև 1940 թիվը շաքարի ճակնդեղի ցանքերը հասցնենք 3 հազար հեկտարի, վոր պեսզի կարողանանք հումքով ապահովել շաքարի գործարանը, վորը նախատեսնվում է կառուցել 1940 թվին:

1938 թվին մենք ծխախոտի ցանքերի տարածությունն ավելացրինք և հասցրինք մինչև 2860 հեկտարի:

Այս կուլտուրան մեծ նշանակություն ունի



կոլտնտեսությունների և կոլտնտեսականների յեկամուտները բարձրացնելու համար:

Այս տարի ծխախոտի կուլտուրայի մշակությունը մենք մտցրինք նոր շրջաններում— Ազիզբեկովի և Սիսիանի շրջաններում, ցանքերի տարածությունն ավելացրինք Կոտայքի, Ղափանի, Ծամշադինի և Իջևանի շրջաններում:

Մեր հողային որգանները պետք է օգնություն ցույց տան շրջանային որգաններին ու կոլտնտեսություններին՝ ծխախոտի համար նոր տարածություններ հատկացնելու և դրանց օգտագործման և ծխախոտի ցանքի համար պիտանի հողամասերում իրիգացիոն մանր աշխատանքներ կատարելու գործում, վորպեսզի տարեց-տարի ավելացվի ծխախոտի ցանքերի տարածությունը:

Թույլ տվեք կանգ առնել խաղողագործության և պտղաբուծության վիճակի վրա:

Հայաստանի գյուղատնտեսության այդ կարևոր ճյուղին, վորն ունի մեծ հեռանկարներ, մինչև այժմ հարկ յեղած ուշադրությունը չի հատկացվել: Ժողովրդի թշնամիները, վորոնք վնասարարություն եյին անում, գյուղատնտեսության մեջ ամեն կերպ հետ եյին պահում խաղողի և պտղատու կուլտուրաների զարգացումը, խոչընդոտ եյին

Վաղ ցանքը դեռևս չի ապահովում բարձր բերք ստանալը: Բարձր բերք ստանալու համար հարկավոր է ժամանակին մշակել բամբակի դաշտերը և ժամանակին կատարել վեգետացիոն ջրումը:

Բամբակացան շրջանների կուսկազմակերպությունները պետք է կոլտնտեսականներին պայքարի կազմակերպեն մշակման բարձր վորակի, բամբակենին գյուղատնտեսական կուլտուրաների վնասատուներից ժամանակին բուժելու համար:

1938 թվին շաքարի ճակնդեղի ցանքի տարածությունը կազմում է հազար հեկտար: Դյուզքենդի շրջանում ճակնդեղի աճման պայմանները բացառիկ կերպով լավ են:

Մենք պետք է տարեց-տարի ավելացնենք շաքարի ճակնդեղի ցանքերի տարածությունը և մինչև 1940 թիվը շաքարի ճակնդեղի ցանքերը հասցնենք 3 հազար հեկտարի, վորպեսզի կարողանանք հումքով ապահովել շաքարի գործարանը, վորը նախատեսնվում է կառուցել 1940 թվին:

1938 թվին մենք ծխախոտի ցանքերի տարածությունն ավելացրինք և հասցրինք մինչև 2860 հեկտարի:

Այս կուլտուրան մեծ նշանակություն ունի



կոլտնտեսությունների և կոլտնտեսականների յեկամուտները բարձրացնելու համար:

Այս տարի ծխախոտի կուլտուրայի մշակությունը մենք մտցրինք նոր շրջաններում— Ազիզբեկովի և Սիսիանի շրջաններում, ցանքերի տարածությունն ավելացրինք Կոտայքի, Ղափանի, Շամշադինի և Իջևանի շրջաններում:

Մեր հողային որգանները պետք է ոգնություն ցույց տան շրջանային որգաններին ու կոլտնտեսություններին՝ ծխախոտի համար նոր տարածություններ հատկացնելու ու դրանց ոգտագործման և ծխախոտի ցանքի համար պիտանի հողամասերում խրխլացիոն մանր աշխատանքներ կատարելու գործում, վորպեսզի տարեց-տարի ավելացվի ծխախոտի ցանքերի տարածությունը:

Թույլ տվեք կանգ առնել խաղողագործության և պտղաբուծության վիճակի վրա:

Հայաստանի գյուղատնտեսության այդ կարևոր ճյուղին, վորն ունի մեծ հեռանկարներ, մինչև այժմ հարկ յեղած ուշադրությունը չի հատկացվել: Ժողովրդի թշնամիները, վորոնք վնասարարություն եյին անում, գյուղատնտեսության մեջ ամեն կերպ հետ եյին պահում խաղողի և պտղատու կուլտուրաների զարգացումը, խոչընդոտ եյին

Հանդիսանում խաղողի ու պտղատու նոր այգիների տնկմանը, վիժեցնելով ագրոտեխնիկական ձեռնարկումները՝ տունկերի խընամման և նրանց ժամանակին բուժման ուղղությամբ, իրենց թշնամական աշխատանքը քողարկելով իբր թե ավելի կարևոր կուլտուրաների զարգացման անհրաժեշտությամբ, նրանք վոչնչացնում եյին գոյություն ունեցող այգիները՝ գյուղերի պլանավորման և կուլտուրաների ռայոնացման պատրվակով, խոչընդոտ եյին հանդիսանում պտղաբուծության ու խաղողաբուծության զարգացմանը նոր շրջաններում։

Խաղողի այգիների ընդհանուր տարածությունը 1938 թվին կազմում ե 12,047 հեկտար, իսկ պտղատու այգիները գրավում են 10.314 հեկտար տարածություն։

Խաղողագործությունը և այգեգործությունը Հայաստանում ունեն արդյունաբերական նշանակություն։

Բացակայել ե խնամքը գոյություն ունեցող այգիների նկատմամբ։ Փոխանակ ամեն տարի 2–3անգամ փորելու խաղողի այգիները, այգիները փորել են 2–3 տարին մեկ անգամ։

Խաղողի այգիների և պտղատու այգիների բուժում, իբրև կանոն, սիստեմատիկաբար



չի կատարվել։ Խաղողագործական շրջանները չեյին ստանում բավարար քանակությամբ բուժանյութեր— արջասպ, ծծումբ և սարքավորում։

Հայաստանի Կ(բ)Կ Կենտկոմը և Հայկական ԽՍՀ Ժողկոմխորհն այս տարվա մարտի 31-ին վորոշում ընդունեցին Հայաստանում խաղողագործության ու այգեգործության հետագա զարգացման մասին։

Ամբողջ հանրապետության մեջ խաղողի այգիների գարնանային տնկման պլանը կատարված ե 110 տոկոսով, իսկ խաղողի տընկարանների գցման պլանը՝ 102 տոկոսով։

Խաղողի ու պտղատու այգիների հետագա զարգացման ու նրանց տարածության ընդարձակման համար առաջին հերթին պետք ե ստեղծել տնկարանային տնտեսություն։

Շրջանային կոմիտեները և մեր շրջանային ակտիվը պետք ե իրենց հսկողության տակ առնեն տնկարանների վիճակը և համապատասխան խնամք կազմակերպեն տունկերի նկատմամբ։

Հողժողկոմատի և շրջանային հողբաժինների ուշադրությունը պետք ե կենտրոնացած լինի աշնանային տնկումները նախապատրաստելու վրա, հաշվի առնելով, վոր աշնանային տնկումները կազմում են խաղո-

գի ու պտղատու այգիների տնկման տարեկան պլանի 65—70 տոկոսը:

Այս տարվա պլանը պետք է անպայման կատարվի: Խնդիրն այն է, վորպեսզի խաղողագործությունն ու այգեգործությունն անշեղորեն առաջ մղել դեպի լեռնային ու նախալեռնային շրջանները— Կոտայքի, Ախտայի, Միկոյանի, Ն. Բայազետի, Մարտունու, Բասարգեչարի, Ազիզբեկովի, Կիրովականի, Դյուզքյանդի և Ալավերդու:

Մատնանշված շրջաններում, չնայած այգեգործության ու խաղողագործության զարգացման բարենպաստ պայմանների առկայությանը, մինչև այժմ միջոցներ ձեռք չեն առնվել այդ կուլտուրաների զարգացման ուղղությամբ:

Պետք է մեր լեռնային ու նախալեռնային շրջաններում ամեն կերպ զարգացնել պտուղների միչուրինյան ու միջին-ռուսական տեսակների մշակումը:

Անհրաժեշտ է, վոր Հողժողկոմատն իր տնկարաններն ունենա կոլտնտեսություններում այնպիսի քանակությամբ, վորպեսզի լիովին ապահովի մեր շրջանների պահանջը:

## ԱՆԱՍՆԱՊԱՀՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

Ինչ վերաբերվում է անասնապահության վիճակին, ապա անասունների 1938 թվի առ



1-ն հունվարի վիճակով կատարված ցուցակագրության արդյունքները ցույց տվին անասնապահության հետագա աճումը Հայաստանում:

Մեկ տարվա ընթացքում խոշոր յեղջերավոր անասունների թիվն աճեց 8,4 տոկոսով, վոչխարներինն ու այծերինը 15,6 տոկոսով, խոզերինը 26,3 տոկ., ձիերինը 10 տոկոսով: Ինչպես յերևում է այս թվերից, անասունների թիվն անշեղորեն աճում է անասունների բոլոր տեսակների գծով:

Ինչպես դուք գիտեք վնասարարների— ֆաշիզմի աջ-տրոցկիստական գործակալների նկատմամբ տեղի ունեցած դավադրություններից, վնասարարությունը գյուղատնտեսության մեջ ամենից ավելի ուղղված է յեղել անասնապահության գծով, ըստ վորում այդ կատարվել է ինչպես խոշոր, այնպես և մանր յեղջերավոր անասունների համաճարակային հիվանդությունների— բրուցելլոզայի, տուբերկուլյոզի, դաբաղի, խոզերի ժանտախտի և այլնի տարածման միջոցով:

Նրանք ձախողում եյին անասնապահական կառուցումների շինարարությունը— գոմերի, մեկուսարանների, հորթանոցների. կըրճատում եյին կերաբույսերի ցանքերի տարածությունը:

Մեծ վնաս հասցվեց ցեղական անասնապահությանը:

Պետք է խոստովանել, որ հողային օրգանների կողմից, ինչպես կենտրոնում, այնպես և տեղերում անբավարար չափով են ձեռնարկումներ կիրառվում վնասարարության հետևանքները լիկվիդացիայի ենթարկելու ուղղությամբ: Դրա հետևանքով, այս տարվա գարնանը մենք ունեցանք մատղաշի զգալի անկում: Մատղաշի անկումը հետազոտված 13 շրջաններում կազմում է՝ գառներինը՝ 2,3 տոկոս, հորթերինը՝ 2,2 տոկոս, խոճկորներինը՝ 16,5 տոկոս:

Բացի դրանից մաքիների վիժումը կազմում է 3,8 տոկոս, խոզերինը՝ 1,5 տոկոս և կովերինը՝ 7,5 տոկոս: Այդպիսի կորուստը անասունների ծնի ժամանակ պետք է համարել աննորմալ և հետևանք հիվանդությունների դեմ անբավարար պայքարի ու հիվանդ անասունների մեկուսացման գործի վատ կազմակերպմամբ:

Ոչ մի րոպե չի կարելի հաշտվել տեղերում Հողժողկոմատի, նրա Անասնապահական ու Անասնաբուժական վարչությունների և անասնաբուժական ու անասնաբուժակային կայանների այդպիսի խայտառակ աշխատանքի հետ:



Կուսակցական կազմակերպությունները պետք է կատարեն ընկեր Ստալինի ցուցումը և իրենց ձեռքը վերցնեն անասնապահության հետագա զարգացման ուղղությամբ, կուսակցության ու կառավարության նշած ձեռնարկումների իրականացման ղեկավարությունը:

Մեր պայմաններում, երբ կան մեծ թվով հիվանդ անասուններ, առաջին հերթին պետք է ուշադրությունը և միջոցներն ուղղել գոմերի շինարարության վրա, անպայմանորեն կատարելով մեկուսարանների կառուցման պլանը:

Կուսակցական կազմակերպությունները և կոլտնտեսային ակտիվը պետք է յեռանդուն կերպով պայքարեն մեր կոլտնտեսություններում գոյություն ունեցող դանդաղաշարժության, հնամոլության և անհատական տնտեսության մնացորդների դեմ՝ անասուններին ձմեռը չհարմարեցված շենքերում ու կիսաքաղց վիճակում պահելու դեմ:

Ժամանակն է արդեն կուլտուրական պայմաններ ստեղծելու անասունների պահպանման համար, ժամանակին հող տանել և ապահովել կոլտնտեսային ֆերմաները, ինչպես կոշտ, այնպես և կոնցենտրացված կերպով:

Ժամանակն է, վոր մենք յուրաքանչյուր ֆուրաժային կովից 5–6 ցենտների փոխարեն ստանանք 9–10 ցենտներ և յուրաքանչյուր վոչխարից 0,65 ցենտների փոխարեն 1,3—2 ցենտներ կաթ:

Անասնապահության առողջացման ու հետագա զարգացման գործում կարևորագույն խնդիրներից մեկն է հանդիսանում բոլոր տեսակի անասունների ցեղի բարելավումը:

1938 թվին նախատեսված է մետիզացիայի ենթարկել խոշոր եղջերավոր անասունների 25 տոկոսը, մանր եղջերավոր անասունների 30 տոկոսը և խոզերի 35 տոկոսը:

Մեր հոտի վորակի բարելավման ու մետիզացիայի համար ընթացիկ տարում Միութենական մյուս հանրապետություններից կոլտնտեսականներին բաժանելու համար, ցեղական անասուններ ներմուծվել են հետևյալ քանակությամբ. խոշոր եղջերավոր անասուններ՝ 2000 գլուխ, մանր եղջերավոր անասուններ՝ 2500 գլուխ և խոզեր՝ 360 գլուխ:

Հայկական ԽՍՀ Ժողկոմխորհի ընդունած վորոշման համաձայն մենք պետք է մանր եղջերավոր անասունների և խոզերի մետիզացիան ավարտենք 1939 թվին, իսկ խո-





շոր եղջերավոր անասուններինը՝ 1940 թըվին:

Կոլտնտեսականների միջից մեզանում դեռևս վերացված չէ կովազրկությունը: Առ. 1-ն հունվարի ընթացիկ տարվա կատարված ցուցակագրության արդյունքները ցույց են տալիս, վոր կան 8,5 տոկոս անասնազուրկ և 33,4 տոկոս կովազուրկ կոլտնտեսականներ: Հատկապես հետ են մընում Ապարանի, Մարտունու, Կիրովականի և նույնիսկ Ստեփանավանի շրջանները:

Դրա հետ միասին մի շարք շրջաններում կան գյուղատնտեսական արտելի կանոնադրության այն մասի ամենակոպիտ խեղաթյուրումներ, վորը վերաբերվում է կոլտնտեսականների անձնական ոգտագործման տակ եղած անասուններին: Վոչ կոլտնտեսությունների վարչությունները, վոչ շրջանային հողային բաժինները միջոցներ ձեռք չեն առնում գյուղատնտեսական արտելի կանոնադրությունն այդ հարցի վերաբերյալ անխախտ կատարելու ուղղությամբ, դրանով իսկ խախտելով գյուղատնտեսական արտելի կանոնադրության հիմնական սկզբունքը՝ կոլտնտեսականների անձնական շահերը հանրային - կոլտնտեսային շահերի հետ զուգակցելու մասին:

Բոլոր կուսակցական և անկուսակցական բոլշևիկների ուշադրության կենտրոնում պետք է դրված լինի այս տարի, ամենաուշը 1939 թվի գարնանը կոլտնտեսականների անասնազրկությունն ու կովազրկությունը լիկվիդացիայի ենթարկելու խնդիրը: Այդ նպատակի համար կառավարությունը բաց է թողնում բավականաչափ վարկեր:

Անասնազրկության ու կովազրկության վերացումը կախված է այն բանից, թե շրջանային կազմակերպությունների ղեկավարները վորքա՛ն հմտորեն կկազմակերպեն անասունների գնման գործը և ժամանակին կօգտագործեն այդ նպատակի համար բաց թողնված վարկերը:

Անասնապահության զարգացման համար մեծ նշանակություն ունի կերի բազայի ըստեղծման հարցը:

Հողժողկոմատում բուն դրած մնացորդները տարեց տարի կրճատում էյին կերաբույսերի ցանքերի տարածությունը, նպատակ ունենալով վիժեցնել մարգագետինների ու արոտատեղերի բարելավման ուղղությամբ կիրառվող ձեռնարկումները:

Այդ դրությունը լիկվիդացիայի ենթարկելու համար պետք է անպայմանորեն կատարել կերաբույսերի, արմատապտուղների



և սիլոսային կուլտուրաների ցանքի պլանը: Ապահովել լյուցերնայի ու եսպարցետի սերմացու խոտաբույսերի ժամանակին հունձը և անպայման սերմացուն առանձնացնել առաջին հնձից, այն հաշվով, վոր խոտաբույսերի սերմացվով ապահովվի Հայաստանի յեկող տարվա ամբողջ պահանջը:

Շրջկոմները և շրջգործկոմները պետք է այս տարի խոտհնձի պլանը հասցնեն մինչև յուրաքանչյուր կոլտնտեսությանը և ապահովեն խոտի ժամանակին հունձը, թույլ չտալով, վոր այն փչանա:

Ամբողջ ծղոտն ու հարդը պետք է պահել և նախապես այն փոխադրել անասնաբազաները, չթողնելով այն դաշտում:

Անհրաժեշտ է, վոր բոլոր շրջաններն ապահովեն սիլոսացման պլանի անպայման կատարումը:

Անասնապահության համար կերի բազա ստեղծելու գործում կարևորագույն նշանակություն ունի արոտատեղերում ջուր անցկացնելը:

Աշտարակի, Ապարանի, Կոտայքի և Ազիզբեկովի շրջաններում յեղած ձմեռային արոտատեղերը բացարձակապես չեն համապատասխանում պահանջներին, ապահովված չեն ջրով և դրա հետևանքով բավարար

չափով չեն ոգտագործվում: Այս տարի ար-դեն ջուր է անցկացված Ալագյազի և Կո-տայքի արոտատեղերի մի մասում: Անհրա-ժեշտ է ամենամոտիկ տարիներում ջուր անցկացնել նաև մյուս արոտատեղերը:

Ապահովելով այդ ձեռնարկումների կի-րառումը, մենք արագորեն լիկվիդացիայի կենթարկենք անասնապահության ասպարի-զում կատարված վնասարարության մնա-ցորդները և Հայաստանի գյուղատնտեսու-թյան այդ կարևորագույն ճյուղը դուրս կը բերենք այն ծանր դրությունից, վորի մեջ նա ընկավ թշնամական աշխատանքի հետե-վանքով:

Լիովին իրականացնելով այս միջոցա-ռումները, մենք զորեղ խթան կտանք կուլ-տուրական անասնապահության զարգացմա-նը, լիովին ոգտագործելով Հայաստանում յեղած բոլոր բարենպաստ պայմանները:

Այստեղ էլ հենց պետք է կանգ առնել գյուղատնտեսության յերկու կարևորա-գույն ճյուղերի վրա, վորոնց մի շարք տա-րիների ընթացքում վոչ մի ուշադրություն չի դարձվել և վորոնք յեղել են յերեսի վը-րա թողնված: Դրանք են՝ մեղվաբուծու-թյունը և շերամապահությունը:

Փոխանակ ընդարձակելու շերամապահու-





թյան կերի բազան, թթենիների տարածու-թյունը վերջին տարիներս կրճատվում էր, ամենագիշատիչ ձևով կտրատվում էին թը-թենիները:

Հայմետաքստրեստի հակահեղափոխական-վնասարարական կազմակերպության դատա-վարության վերաբերյալ վերջերս հրապա-րակված նյութերից դուք բոլորդ գիտեք, վոր 1931—1933 թվականների ընթացքում այդ հակահեղափոխական – վնասարարա-կան բանդան շերամապահական շրջաննե-րում վոչնչացրել էր ավելի քան 600 հազար թթենի:

Մինչդեռ շերամապահությունը զար-գացման ամենաբարենպաստ պայմաններ ունի մեր կոլտնտեսություններում:

Հայաստանում մեկ տուփ սերմից միջին հաշվով ստացվում է 54,3 կիլոգրամ բո-ժոժ, մինչդեռ միջին բերքատվությունը Միության մեջ մեկ տուփից 45,95 կիլո-գրամ է: Ինչպես դուք տեսնում եք, Հա-յաստանը բերքատվությամբ առաջին տեղն է գրավում Միության մեջ:

Շերամապահության զարգացումը մեր կոլտնտեսություններում առանց մեծ ծախ-սերի կարող է յեկամուտի լրացուցիչ աղբ-յուր ստեղծել հատկապես Հայաստանի լեռ-

նային ու նախալեռնային շրջաններում: Այդ հաստատելու համար բերեմ մի քանի օրինակներ:

Մեղրու շրջանի «Նոր կյանք» կոլտնտեսությունը 1937 թվին շերամապահությունից ստացավ 199·144 ռուբլի յեկամուտ:

Կան մի ամբողջ շարք կոլտնտեսություններ Մեղրու, Կոտայքի շրջաններում, վորոնք ստացել են 43—55 հազարական ռուբլի յեկամուտ:

Մեղրու շրջանի կոլտնտեսուհի Վոսկի Փայտյանը բոժոժից ստացել է 2542 ռուբլի յեկամուտ: Կոլտնտեսական Հովսեփ Բարսեղյանը՝ Աշտարակի շրջանի Ոշական գյուղից, ստացել է 2610 ռուբլի: Սաթենիկ Թումանյանը՝ Ղափանի շրջանի Նորաշեն գյուղից, ստացել է 1582 ռուբլի յեկամուտ:

Այս օրինակներն ակնառու կերպով ցույց են տալիս թե կոլտնտեսականների համար վորքան ձեռնտու յե շերամապահության զարգացումը:

Թթենին պետք է լայնորեն արմատացնել բոլոր պարապ հողամասերում և վոռոգման առուների ափերին: Պետք է կոլտնտեսականներին օգնել նաև թթենին տնամերձ հողամասերում զարգացնելու գոր-



ծում, ինչպես շերամապահությամբ հայտնի, այնպես և նոր շրջաններում: Շրջանները պետք է անպայմանորեն կատարեն թթենու աշնանային տնկման պլանը:

Բացառիկ նպաստավոր պայմաններ կան նաև մեղվաբուծության զարգացման համար:

Կոլտնտեսությունների և կոլտնտեսականների յեկամուտները բարձրացնելու նպատակով պետք է լիովին օգտագործել այդ բարենպաստ պայմանները:

Հայաստանում ներկայումս կոլտնտեսություններում կան 420 մեղվաբուծական ֆերմաներ և Հողժողկոմատի յերկու մեղվաբուծական խորհտնտեսություն, ընդամենը 40 հազար 113 փեթակով: Բացի դրանից, կոլտնտեսականները տնամերձ տնտեսություններում ունեն 53·140 փեթակ: 1937 թվին ապրանքային արտադրանքը կազմեց 620 տոնն մեղր և 50 տոնն մոմ:

Մեր մեղրը, ինչպես բոլորին հայտնի յե, իր վորակով հռչակված է Հայաստանի սահմաններից շատ հեռու:

Մեր կուսակցական և խորհրդային կազմակերպությունները պետք է ամեն կերպ օգնություն ցույց տան կոլտնտեսու-

թյուններին՝ մեղվաբուծական ֆերմաներն ընդարձակելու գործում, ինչպես և կոլտնտեսականներին՝ իրենց տնամերձ տնտեսություններում փեթակների թիվն ավելացնելու գործում:

Անհրաժեշտ է, որ Հողժողկոմատը կազմակերպի մի արհեստանոց, փեթակի արկղներ արտադրելու և կոլտնտեսություններին ու կոլտնտեսականներին մատակարարելու համար: Հողժողկոմատը պետք է կազմակերպի մեղվաբուծական ինվենտարի մատակարարումը բոլոր շրջաններում և ամեն կերպ օգնություն ցույց տա մեղուների հիվանդությունների դեմ մղվող պայքարում:

## ԿՈԼԵԿՏԻՎԱՑՄԱՆ ՎԻՃԱԿԻ ՄԱՍԻՆ

Հաշվետու ժամանակաշրջանում մենք ունենք գյուղատնտեսության կոլեկտիվացման հետագա աճում:

Եթե առ 1—ն հունվարի 1937 թվի կոլեկտիվացումը կազմում եր 86,6 տոկոս, ապա առ 1—ն հունվարի 1938 թվի կոլեկտիվացումն արդեն հասնում եր ավելի քան 90 տոկոսի:

Կոլտնտեսությունների քանակական աճ-





ման զուգընթաց, այդ ժամանակաշրջանում կոլտնտեսություններն ամրապնդվեցին կազմակերպչորեն ու տնտեսապես:

Այն կոլտնտեսությունները, որոնք ստույգ կերպով իրականացնում եյին գյուղատնտեսական արտելի Ստալինյան կանոնադրությունը և դրա հիման վրա ամրացնում եյին կոլտնտեսային կարգապահությունը, որինակելիորեն ավարտեցին տնտեսական տարին, մեծ չափով ավելացրին նատուրալ ու դրամական եկամուտները, վերածվեցին հարուստ կոլտնտեսությունների՝ միլիոն ռուբլիների հասնող եկամուտներով, և կոլտնտեսականներն սկսեցին ապրել ունևոր:

Որինակ՝ Վաղարշապատի շրջանի «Պայքար» կոլտնտեսությունը 1937 թվին ստացավ 1·030·700 ռուբլի ընդհանուր եկամուտ և յուրաքանչյուր աշխորին տվեց 10 ռուբ. 57 կոպ. դրամով, 5,22 կիլոգրամ հացահատիկ, 0,6 կիլոգրամ խաղող, 0,12 լիտր ոգի և շատ այլ մթերքներ: Յուրաքանչյուր կոլտնտեսական միջին հաշվով վաստակել եր 200 աշխոր: Կան առաջավոր կոլտնտեսականներ, որոնք վաստակել եյին 300 աշխոր:

Ղամարլվի շրջանի «Փարիզյան Կոմունա» կոլտնտեսությունն ստացավ 1.588.000 ռուբլի ընդհանուր յեկամուտ. աշխօրին տվեց 11 ռուբլի դրամ, 3,48 կիլոգրամ խաղող, 1,33 լիտր գինի, 0,14 լիտր օղի և մեծ քանակությամբ զանազան այլ բանջարեղեն ու մթերքներ:

Հոկտեմբերյանի շրջանի Քյալագյարխ գյուղի՝ Մայիսի 1—ի անվան կոլտնտեսությունը 1937 թվին ստացավ 1.430.021 ռուբլի ընդհանուր յեկամուտ, աշխօրին տվեց 13 ռուբ. 84 կոպ. դրամ, 1 կիլոգրամ 600 գրամ հացահատիկ, 1 կիլոգրամ 320 գրամ խոտ և այլ մթերքներ:

Այսպիսի առաջավոր կոլտնտեսությունների կողքին կան նաև այնպիսի կոլտնտեսություններ, վորոնք իրենց ցուցանիշներով մեծապես հետ են մնացել և տվել են աշխօրի արժեքի իջեցում:

Վաղարշապատի շրջանի Շահումյանի անվան կոլտնտեսությունն ստացել է 94.817 ռուբլի ընդհանուր յեկամուտ. յուրաքանչյուր աշխօրին տվել է 1 ռուբ. 13 կոպ. դրամ, 2,4 կիլոգրամ հացահատիկ, 500 գրամ բանջարեղեն, 1 կիլոգրամ խաղող. աշխօրի





ընդհանուր արժեքը կազմում է 2 ռուբ. 60 կոպեկ:

Ղամարլվի շրջանի Ն. Աղբաշ գյուղի կոլտնտեսությունը 1937 թվին ստացել է 342.105 ռուբլի ընդհանուր յեկամուտ. յուրաքանչյուր աշխօրին տվել է 1 ռուբ. 36 կոպ. դրամ, 300 գրամ խաղող, 20 գրամ մեղր, 1,6 կիլոգրամ հացահատիկ. աշխօրի ընդհանուր արժեքը կազմում է 2 ռուբլի 31 կոպեկ:

Ինչո՞վ պետք է բացատրել, վոր այս հետ մնացող կոլտնտեսություններն աշխատելով միևնույն պայմաններում, ունենալով գյուղատնտեսության միևնույն կուլտուրան և մեխանիզացիայով ապահովված լինելով նույն չափով, ինչպես վոր առաջավոր կոլտնտեսությունները, ստացել են այդպիսի աննշան յեկամուտ:

Հետ մնալու պատճառը գլխավորապես թաղնված է այդ կոլտնտեսությունների կողմից գյուղատնտեսական արտելի Ստալինյան կանոնադրության խախտման մեջ:

Այդ կոլտնտեսություններում վո՛չ կուսակցական կազմակերպությունները, վո՛չ կոլտնտեսային [illegible] կանգնած չեն գյու-

ղատնտեսական արտելի կանոնադրության և կուսակցության ու կառավարության վորոշումների պահպանման դիրքում:

Իբրև կանոն, այդպիսի կոլտնտեսությունների նախագահների և կոլտնտեսությունների վարչությունների կողմից կարելի յե հանդիպել կամայականության՝ արտադրական կյանքի ու յեկամուտների բաշխման հարցերում:

Կանոնադրության խախտում է կատարվում վարչա—տնտեսական ծախսերի համար միջոցների առանձնացման հարցում:

Որինակ՝ Աղիզբեկովի շրջանում Ախտայի, Գյուլստանի, Ջուլի կոլտնտեսություններում վարչա—տնտեսական կարիքների համար առանձնացված է դրամական յեկամուտի 6 տոկոսը, Կիրովականի շրջանի Զորագյուղի կոլտնտեսությունում՝ 9,2 տոկոսը, նույն շրջանի Շահալի կոլտնտեսությունում՝ 15 տոկոսը· փաստորեն ծախսվում է շատ ավելի, քան նրանք առանձնացրել են վարչա—տնտեսական ծախսերի համար, մինչդեռ գյուղատնտեսական արտելի Կանոնադրությամբ վարչա—տնտեսական ծախսերի համար թույլատրվում է հատկացնել 2 տոկոսից վոչ ավելի:



Կոլտնտեսությունների մեծամասնությունը չի պահպանում գյուղատնտեսական արտելի Կանոնադրությունը՝ անբաժանելի ֆոնդի առանձնացման հարցում:

Շինարարության մեջ կատարվում են միջոցների՝ կոլտնտեսության ուժերից վեր ներդրումներ և ծախսվում են ըստ աշխորերի բաշխման յենթակա դրամական միջոցները:

Որինակ՝ Մարտունու շրջանում Թազաքենդ գյուղի կոլտնտեսությունն անբաժանելի ֆոնդին հատկացրել է 28 տոկոս, Գյոզալդարայի կոլտնտեսությունը՝ 35 տոկոս, Աղյաման գյուղի կոլտնտեսությունը՝ 25 տոկոս և այն էլ առանց կոլտնտեսականների ընդհանուր ժողովի թույլտվության:

Հոկտեմբերյանի շրջանում Հոկտեմբերյանի, Նեջրլուի, Մ. Շահրիարի, Ն. Բամբակաշատի կոլտնտեսություններում ամբողջ անբաժանելի ֆոնդը ծախսվել է դըպրոցական շինարարության վրա:

Ղամարլուի շրջանում՝ Յուվա, Թազագյուղ, Վ. Ղամարլու և այլ գյուղերի կոլտնտեսություններում սկսել են մեծ չափերի հասնող ակումբային շինարարու-

թյուն, այդ գործի վրա ծախսելով բոլոր դրամական յեկամուտների 60—70 տոկոսը, չհաշված կոլտնտեսականների աշխատանքային մասնակցությունը:

Նույնպիսի յերևույթներ տեղի ունեն նաև մի շարք այլ շրջաններում, ըստ վորում շրջկոմները և շրջգործկոմները ուղղակի անտարբերություն են ցուցաբերում:

Թալինի շրջանում դրամական ընդհանուր յեկամուտներից ըստ աշխօրերի բաշխել են միայն 23 տոկոսը, Ախտայի շըրջանում՝ 28 տոկոսը, Կիրովականի շրջանում՝ 14,7 տոկոսը, Աղիզբեկովի շրջանում՝ 27 տոկոսը, Ղափանի շրջանում՝ 40 տոկոսը:

Դրամական յեկամուտների ըստ աշխօրերի բոլորովին չեն բաշխվել Բասարգեչարի շրջանի 30 կոլտնտեսություններում, Ապարանի շրջանի 25 կոլտնտեսություններում, Կոտայքի շրջանի 16 կոլտնտեսություններում, Թալինի շրջանի 14 կոլտնտեսություններում և Ալավերդու շրջանում՝ 20 կոլտնտեսություններում:

Կոլտնտեսությունների նախագահների և վարչությունների աշխատանքի այդպիսի պրակտիկան հասցրեց կոլտնտեսությունների դրամական միջոցների վատնման և ըստ



աշխօրերի բաշխման յենթակա յեկամուտների դրամական մասի արհեստականորեն իջեցման:

ԽՍՀ Միության Ժողկոմխորհի և Համ Կ(բ)Կ Կենտկոմի 1938 թվի ապրիլի 19-ի վորոշումը դատապարտում է այդպիսի կամայականությունը կոլտնտեսությունների նախագահների ու վարչությունների կողմից, գյուղատնտեսական արտելի Կանոնադրության խախտումը և կոլտնտեսականների ընդհանուր ժողովների դերի անտեսումը:

Այդ վորոշումը դատապարտում է դեպի կոլտնտեսականի աշխօրերն անհոգ վերաբերմունքը և կոլտնտեսային յեկամուտները կապիտալ, արտադրական ու վարչատնտեսական չափից դուրս մեծ ծախսերի վրա վատնելու պրակտիկան, վորպես հակակոլտնտեսային:

Այդ վորոշման համաձայն, այսուհետև սահմանվում է հետևյալ կարգը. կոլտնտեսությունն ըստ աշխօրերի կոլտնտեսականների միջև բաշխում է կոլտնտեսության բոլոր դրամական յեկամուտների առնվազն 60—70 տոկոսը և կապիտալ ծախսերը չեն

կարող գերազանցել դրամական յեկամուտի 10 տոկոսից:

Նույն այդ վորոշման համաձայն, կոլտնտեսության արտադրական կարիքների համար կոլտնտեսականների ընդհանուր ժողովի կողմից հաստատված տարեկան ծախքային նախահաշվից՝ վարչությունը կարող է ծախսել նախահաշվով նախատեսված ծախսերի վոչ ավելի քան 70 տոկոսը, իսկ մնացած 30 տոկոսը մնում է պահեստում և ծախսվում է բերքի հեռանկարը վերջնականապես պարզվելուց հետո միայն ու կոլտնտեսականների ընդհանուր ժողովի վորոշմամբ:

Կուսակցության և կառավարության այս վորոշումը բացառիկ նշանակություն ունի կոլտնտեսային միջոցների ծախսումը կարգավորելու, աշխօրերի արժեքը բարձրացնելու գործում, և դրանով իսկ, կոլտնտեսությունների հետագա կազմակերպչական-տնտեսական ամրապնդման տեսակետից:

Գյուղատնտեսական արտելի Կանոնադրության խախտումը վերաբերող հաջորդ հարցը, վորի վրա արժե կենտրոնացնել կուսակցական կազմակերպությունների ուշադրությունը, այդ՝ կոլտնտեսային ար-



տադրանքն էժան գներով կամ բոլորովին ձրի զանազան մարդկանց բաց թողնելն է, ինչպես կոլտնտեսության ներսում, այնպես և նրանից դուրս:

Մի քանի շրջաններում կան մեծ թվով խնամատուներ ու կոլտնտեսային արտադրանքը խժռողներ: Նոր Բայազետի շրջանի Սարուխան գյուղում շրջկենտրոնի և գյուղի աշխատողները բառիս բուն իմաստով հափշտակում եյին կոլտնտեսային արտադրանքը — մատակարարվում եյին կուսկոմիտեյի քարտուղարները, կուսկոմիտեյի անդամները, շրջկոմի յերկրորդ քարտուղարը և շրջանի այլ աշխատողներ:

Այդպիսի յերևույթ տեղի ունի նաև մըյուս շրջաններում:

Շրջկոմները պետք է վերջ դնեն այդպիսի հակակոլտնտեսային յերևույթին և վոչ վոքի կոլտնտեսություններից ձրի կերպով կամ իջեցված գներով բաց չթողնեն վորևէ արտադրանք:

Կոլտնտեսություններում վատ է կազմակերպված աշխօրերի կոլտնտեսականների միջև բաշխման յենթակա մթերքների պահպանման գործը: Յերբեմն անփույթ պահելու

հետևանքով մթերքները պացեստներում
փչանում են:
Օրինակ՝ Դուղքյանդի շրջանի Մ. Մու-
սա գյուղի կոլտնտեսության պահեստում
յեղել է ըստ աշխօրերի չբաշխված 3163
կիլոգրամ յուղ:
Մթերքների վոչ ժամանակին բաշխումը
հասցնում է արտադրանքի մասսայական
փչացման ու վատնման ինչպես կոլտնտե-
սությունների ներսում, այնպես և կոլտըն-
տեսությունից դուրս:

Հաշվետու ժամանակաշրջանում գյու-
ղատնտեսական արտելի Կանոնադրության
ամենակոպիտ խախտում է տեղի ունեցել
կոլտնտեսականներին կոլտնտեսությունից
վտարելու հարցում:
Կոլտնտեսությունների վարչությունները
ու նախագահները փոխանակ հետևելու գյու
ղատնտեսական արտելի Կանոնադրության
պահպանմանը, իրենք են կամայականու-
թյուն թույլ տվել կոլտնտեսականների վե-
րաբերմամբ: Կոլտնտեսականներին կոլտըն-
տեսությունից վտարելու հարցում մեծ թը-
վով շեղումներ ու խեղաթյուրումներ են
կատարվել Իջևանի, Միկոյանի, Աշտարա-
կի, Նոր Բայազետի, Ախտայի, Ղամարլվի



Դիլիջանի, Կոտայքի և այլ շրջաններում:
Օրինակ՝ Ղամարլվի շրջանում Աղհամ-
ղալու գյուղի կոլտնտեսությունից վտարել
են կոլտնտեսական Ս. Խանամիրյանին և
նրա ընտանիքին այն բանի համար, վոր նա
աշխատում է Յերևանի Կոշկի ֆաբրիկա-
յում: Ս. Խանամիրյանը վորպես օրինակելի
կոլտնտեսական սովորելու էր ուղարկվել
Կոշկի ֆաբրիկան: Նրա ընտանիքը 1937 թվի
ընթացքում վաստակել էր 316 աշխօր:
Շրջգործկոմը խախտելով գյուղատնտեսա-
կան արտելի Կանոնադրությունը, հաստա-
տեց նրա վտարումը կոլտնտեսությունից:
Գորիսի շրջանում Գորիս գյուղի կոլ-
տնտեսությունից վտարել են կոլտնտեսա-
կան Բ. Մեժլումյանին՝ կոլտնտեսության
ներքին կարգ ու կանոնը խախտելու հա-
մար, առանց ձեռք առնելու գյուղատնտե-
սական արտելի Կանոնադրությամբ նախա-
տեսված նախազգուշական միջոցները: Վտա-
րումը կատարվել է նրա բացակայությամբ:
Շրջգործկոմը խախտելով գյուղատնտեսա-
կան արտելի Կանոնադրությունը, հաստա-
տել է նրա վտարումը կոլտնտեսությունից:
Կոլտնտեսությունների շատ վարչու-
թյունների, շրջգործկոմների ու շրջկոմների

այդպիսի հակակուսակցական, հակապետական պրակտիկային վերջ դրվեց ԽՍՀ Միության Ժողկոմխորհի և Համ Կ(բ)Կ Կենտկոմի 1938 թվի ապրիլի վորոշմամբ:

Այդ վորոշման համաձայն, արգելվում է կոլտնտեսությունների զտում անցկացնելը՝ թեկուզ և ինչպիսի պատճառով: Արգելվում է կոլտնտեսականների վտարումն այն պատճառաբանությամբ, թե ընտանիքի անդամներից մեկն աշխատանքի յե գնացել պետական ձեռնարկություններում: Արգելվում է կոլտնտեսականների վտարումն կոլտնտեսությունից՝ ներքին կարգապահական կանոնները խախտելու համար:

Այդ վորոշման համաձայն, կոլտնտեսություններից կոլտնտեսականների վտարումը թույլատրվում է վորպես ծայրահեղ միջոց կոլտնտեսության այն անդամների վերաբերմամբ, վորոնք անուղղելի յեն, վորոնք կազմալուծում են կոլտնտեսությունը և այն էլ արտելի անդամների ընդհանուր ժողովի վորոշմամբ միայն, վորին ներկա յե արտելի անդամների ընդհանուր թվի առնվազն յերկու յերրորդը:

ԽՍՀ Միության Ժողկոմխորհի և Համ Կ(բ)Կ Կենտկոմի այս վորոշումը խախտե-



լու համար հանցավորները կենթարկվեն դատի, վորպես քրեական հանցագործներ:

Կոլտնտեսությունների կուսակցական կազմակերպությունները և շրջանային կուսակցական, խորհրդային ղեկավարները պետք է հետևեն ԽՍՀ Միության Ժողկոմխորհի և Համ Կ(բ)Կ Կենտկոմի վորոշումների ճշգրիտ իրականացմանը:

Գյուղատնտեսական արտելի Կանոնադրությունը խախտվել է նաև կոլտնտեսականներին տնամերձ հողամասեր հատկացնելու հարցում:

Մի քանի շրջաններում մինչև 1938 թվի գարունը մի շարք կոլտնտեսությունների կոլտնտեսականներ չունեյին տնամերձ հողամասեր կամ թե նրանց հատկացված եյին յեղել անպետք ու աղակալած հողամասեր, որինակ՝ Ղամարլվի և Զանգիբասարի շրջաններում:

Այս տարի գարնանը Հայաստանի Հողժողկոմատն ուղղեց այդ սխալը:

Դրա հետ միասին, տեղի ունի գյուղատնտեսական արտելի Կանոնադրության նաև այլ բնույթի խախտում, յերբ առանձին կոլտնտեսություններում ակտիվն ու առանձին կոլտնտեսականներ ըստանում ե-

յին ավելի լավ վորակի և մեկուկես—յերկու անգամ նորմայից ավելի տնամերձ հողամասեր. որինակ՝ Դուզքյենդի, Կիրովականի, Աշտարակի, Հոկտեմբերյանի, Ղամարլվի, Կալինինոյի և այլ շրջաններում:

Այդ շրջանների կոլտնտեսությունները և շրջգործկոմները պետք է ուղղեն այդ սխալը և տնամերձ հողամասերի չափը համապատասխանեցնեն գյուղատնտեսական արտելի Կանոնադրությանը:

Ինչպես յերևում է իմ բերած փաստերից, կոլտնտեսությունների մի մասի յետ մնալու պատճառն առաջավոր, ուժեղ կոլտնտեսություններից՝ հանդիսանում են ներկոլտնտեսային կյանքի վատ կազմակերպումը, գյուղատնտեսական արտելի Կանոնադրության— կոլտնտեսային կյանքի այդ անխախտ հիմքի — խախտումները:

Կուսակցական կազմակերպությունները, կոլտնտեսային ակտիվն իրենց ուշադրության կենտրոնում պետք է դնեն գյուղատնտեսական արտելի Կանոնադրության անպայման կատարումը բոլոր կոլտնտեսությունների կողմից և թույլ չտալ կանոնադրության խախտումներ, ում կողմից էլ կատարվելիս լինի այդ խախտումը:



Հարկավոր է, վորպեսզի բոլորը լավ յուրացնեն, վոր կոլտնտեսության ամրապնդումը և կոլտնտեսականների ունևոր կյանքը ամբողջապես կախված է գյուղատնտեսական արտելի Ստալինյան կանոնադրության ճիշտ իրագործումից:

Կառավարության և կուսակցության քաղաքականության ու վորոշման ևս մեկ խախտման մասին, վոր տեղի ունի մեր շրջանային կուսակցական կազմակերպությունների աշխատանքում՝ անհատական տնտեսությունների կողմից պետության հանդեպ ունեցած իրենց պարտավորությունների կատարման հարցում:

Շրջանների մեծ մասում գոյություն ունի վոչ ճիշտ պրակտիկա, վորի ժամանակ մենատնտեսները փաստորեն խուսափում են պետական պարտավորությունների կատարումից: Այդպիսի շրջաններում, խորհրդային ու կուսակցական կազմակերպությունների վատ աշխատանքի շնորհիվ, մենատնտեսները գտնվում են կոլտնտեսականների համեմատությամբ արտոնյալ վիճակում:

Որինակ՝ Ապարանի շրջանում մենատնտեսներից չի գանձվել 36 ցենտներ միս, 60 ցենտներ կաթ, 3 ցենտներ բուրդ, 734

ցենտներ հացահատիկ, մինչդեռ այդ շրջանում կոլտնտեսությունները լրիվին կատարել ու գերակատարել են մթերումների պլաններն այդ բոլոր տեսակների գծով:

Նույնպիսի դրություն տեղի ունի Ախտայի, Վեդու, Կիրովականի, Մարտունու և այլ շրջաններում: Մենատնտեսների վրա զգալի պարտքեր կան ինչպես գյուղատնտեսական հարկի, այնպես և կուլտհարկի գծով:

Միության Ժողկոմխորհի և ՀամԿ(բ)Կ Կենտկոմի 1938 թվի ապրիլի 19-ի վորոշումը խորհրդային ու կուսակցական կազմակերպություններից պահանջում է վերջ դնել մենատնտեսի վերաբերմամբ թողտվության հակապետական ու հակակոլտնտեսային պրակտիկային: Այդ վորոշման համաձայն, 1938 թվի ապրիլի 25-ից վերականգնըված է անհատական տնտեսությունների ունեցած ձիերից գանձվող հարկը:

Խորհրդային և կուսակցական կազմակերպությունների խնդիրն է՝ սիստեմատիկաբար ստուգել թե մենատնտեսներն ինչպես են կատարում բոլոր տեսակի տեղական պարհակները (ճանապարհաշինարարական աշխատանքները, դպրոցների, հիվանդանոցների սպասարկումը և այլն), և թույլ



չտալ մենատնտեսների թեկուզ ինչպիսի արտոնություն՝ կոլտնտեսականների համեմատությամբ:

Դատախազությունը և դատական օրգանները չպետք է ձգձգեն պետության հանդեպ իրենց պարտավորությունները չկատարող մենատնտեսների գործերը:

## ՄՏ ԿԱՅԱՆՆԵՐԻ ՎԻՃԱԿԸ

ՄՏ կայանների դերը գնալով ավելի ու ավելի յե աճում Հայաստանի գյուղատնտեսության մեջ:

1938 թվականին ՄՏ կայանների թիվն ավելանում է 5 մեքենատրակտորային կայանով: Դրանցից յերեքն արդեն կազմակերպվել են այս տարվա գարնանը, իսկ յերկուսը կկազմակերպվեն աշնանը:

1938 թվի գարնանը Հայաստանի կոլտնտեսային դաշտերում աշխատում եյին արդեն 1111 տրակտոր: 1938 թվի բերքահավաքի ժամանակ կաշխատեն 152 կոմբայն:

1938 թվին 1071 կոլտնտեսություններից 649 կոլտնտեսություն սպասարկվում են ՄՏ կայանների կողմից:

Հայաստանի մեքենատրակտորային կայանները 1937 թվի տարեկան պլանը կատարեցին՝ փափուկ հերկի վերածած 85,6

տոկոսով: 24 ՄՏ կայաններից միայն չորսն
են կատարել արտադրական առաջադրանք-
ները. Աղինի ՄՏ կայանը 114 տոկոսով,
Հոկտեմբերյանինը՝ 117 տոկոսով, Ղամար-
լուինը՝ 100,8 տոկոսով և Կալինինոյինը՝
100 տոկոսով:

Վատ են աշխատել Սիսիանի, Ապարանի,
Գորիսի, Միկոյանի և Ն.-Բայազետի ՄՏ
կայանները, որի հետևանքով նրանք ֆի-
նանսական ծանր դրություն ապրեցին ամ-
բողջ 1937 թվի ընթացքում:

ՄՏ կայանների մեծամասնությունը 1937
թվին ունեցին մեծ գերածախս՝ վառելիքի և
վարչա – տնտեսական ծախսերի գծով: Դը-
րա հետևանքով մեկ հեկտար վարի աշխա-
տանքի պլանային ինքնարժեքը նախատես-
վածից գերազանցեց 7 ռուբ. 65 կոպեկով:

Եղած ավտոտրանսպորտը վատ էր օգ-
տագործվում, նրա բեռնավորումը 1937
թվին կազմում էր 37 տոկոսից ոչ ավելի:

Կուսակցությունը և կառավարությունը,
հաշվի առնելով ՄՏ կայանների կարևոր
դերը կոլտնտեսությունների ամրապնդման
գործում, ստեղծել են բոլոր անհրաժեշտ
պայմանները ՄՏ կայանների լավագույն
աշխատանքի համար:

ՄՏ կայանների ամբողջ ֆինանսական-
տնտեսական գործունեությունը պարզեց-
նելու, ֆինանսական կարգապահությունն
ամրապնդելու նպատակով, ԽՍՀՄ Ժողկոմ-
խորհի որոշմամբ ՄՏ կայանները ամբող-
ջապես փոխադրված են պետական բյուջե-
յին: Այս հանգամանքը հողային օրգանների
աշխատողներից, մասնավորապես ՄՏ կա-
յանների դիրեկտորներից պահանջում է
հատուկ պլանային աշխատանք և ֆինանսա-
կան խիստ կարգապահության պահպանում:

Ընթացիկ տարում մենք մեր կոլտնտեսու-
թյունները մեծապես ամրապնդեցինք մաս-
նագետների — ագրոնոմների, անասնաբույժ-
ների, զոոտեխնիկների և այլ կադրերով.
1937 թվի սեպտեմբերի 1-ից մինչև 1938
թվի մայիս ամիսը շրջաններն աշխատանքի
յին ուղարկված 67 ագրոնոմ, 48 զոոտեխ-
նիկ և 45 անասնաբույժ: Բացի դրանից, ու-
ղարկված են 219 անասնաբուժական տեխ-
նիկ, ագրոտեխնիկ և տեխնիկ – անասնա-
պահներ:

Այս տարի լայնորեն աշխատանքը կազ-
մակերպվեց մասսայական որակավորման
կադրերի պատրաստման ուղղությամբ:
Շրջանային կոլտնտեսային դպրոցներում
սովորում են 14.512 մարդ. դրանցից ար-

դեն պատրաստված են 6·581 մարդ, այդ թվում կոմբայնավարներ՝ 64, տրակտորիստներ՝ 832, շոֆերներ՝ 60, դաշտավարական բրիգադիրներ՝ 1·440, ողակավարներ՝ 1261, կթվորներ – անասնապահներ ու հորթապահներ՝ 1·060 և սանիտարներ՝ 274:

Կադրերի պատրաստման ասպարեզում հետ են մնում այնպիսի շրջաններ, ինչպես՝ Ապարանի, Գորիսի և Ն. Բայազետի շրջանները:

Բացի դրանից, հանրապետության մեջ կան կոլտնտեսային ղեկավար աշխատողների վորակավորման բարձրացման 5 միջշրջանային դպրոց, վորտեղ սովորում են կոլտնտեսությունների նախագահները, անասնապահական ֆերմաների վարիչներն ու բրիգադիրները: Այդ դպրոցներն արդեն անցել են 405 ֆերմայի վարիչներ և 559 բրիգադիրներ:

Այդ կադրերը պատրաստություն ստանալով հիշյալ դպրոցներում ու դասընթացներում, վերադառնում են կոլտնտեսությունները՝ զինված ագրո – զոոմինիմումի գիտելիքներով, մեքենաները վարելու տեխնիկայի վերաբերյալ գիտելիքներով, կոլտնտեսային արտադրության որակավոր աճող մեքենայա-



ցումը յուրացնելու համար:

## ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ՑՈՒՑԱՀԱՆԴԵՍԻ ՄԱՍԻՆ

Հաջորդ հարցը, վորի վրա յես կուզեի կանգ առնել, այդ՝ գյուղատնտեսական ցուցահանդեսին նախապատրաստվելու մասին է և գյուղատնտեսության առաջավոր – ստախանովականների մասին:

Ցուցահանդեսային կոմիտեն մինչև 1938 թվի սկզբին աշխատում եր բացառիկ կերպով վատ և ցուցահանդեսի համար նախապատրաստական աշխատանքներն ըստ էության ձախողեցին: 1938 թվի հունվարին միայն, Կենտկոմի հատուկ միջամտությունից հետո, դրությունն ուղղվեց: Տեղերում դեռևս վատ է կազմակերպված գյուղատնտեսական ցուցահանդեսի եքսպոնատների պահպանումը:

Հողային օրգանների և շրջանային կուսակցական ղեկավար կազմակերպությունների անբավարար աշխատանքի շնորհիվ, մի շարք առաջավոր կոլտնտեսականներ, վորոնք լիակատար իրավունք ունեն մասնակցելու Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսին, չներկայացվեցին:

Անհրաժեշտ է բոլշևիկորեն դիմավորել

Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսը, վորն ունի քաղաքական ու տնտեսական հսկայական նշանակություն:

Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսում Հայաստանը պետք է ցույց տա իր առաջավորներին, լավագույն կոլտնտեսություններն ու աշխատանքի լավագույն որինակները՝ ինչպես ըստ առանձին ճյուղերի, այնպես և ամբողջ գյուղատնտեսության գծով:

1937 թվին վոչ քիչ թվով ստախանովականներ ցույց տվին իրենց աշխատանքի լավագույն որինակները:

Մարտունու շրջանի Ն. Ալիչալու գյուղի կոլտնտեսությունում կթվոր Մարգարիտ Ղազարյանը, վոր խնամում է 10 կով, 1937 թվին յուրաքանչյուր կովից ստացավ 11 ցենտներ կաթ: «Դենիկ» անունով կովից նա ստացել է 13,8 ցենտներ կաթ: Մարգարիտ Ղազարյանը խոստանում է 1938 թվին յուրաքանչյուր կովից ստանալ 12 ցենտներ կաթ: Վորպես կթվոր նա կոլտնտեսությունում աշխատում է 1931 թվից և կթել է սովորեցնում աշխատանքի իր ընկերներին: 1937 թվին նա վաստակել էր 240 աշխոր:

Այդ կոլտնտեսության վոչխարաբուծա-





կան ֆերմայում վորպես անասնապահ—չոբան աշխատում է Սալիբեկ Պետրոսյանը: 1937 թվին նրան հանձնված էր 270 գառ, վորոնց նա պահպանեց լրիվին և տվեց 38 կիլոգրամ կենդանի քաշ՝ սահմանված 27 կիլոգրամ միջինի փոխարեն: Յուրաքանչյուր գառից նա տվեց 400 գրամ բուրդ, սահմանված 200 գրամի փոխարեն:

№5 բրիգադի բրիգադիր Գրիգոր Ղազարյանը 1937 թվին ցորենի ցանքի յուրաքանչյուր հեկտարից ստացավ 41,5 ցենտներ բերք, նախատեսված 12 ցենտների փոխարեն:

Շքանշանակիր Խանաթ Խուդոյանը՝ Լոռու ազնվացեղ անասնապահական խորհտնտեսությունից, վորպես կթվոր աշխատում է 1928 թվից: 1937 թվին յուրաքանչյուր ֆուրաժային կովից նա ստացավ 3070 լիտր կաթ:

Տատյանա Նովոսելցևան՝ Բլագոդարնոյե ֆերմայում, ունի 7 տարվա արտադրական ստաժ: Կթի պլանը 1937 թվին նա գերակատարեց 108 տոկոսով: Յուրաքանչյուր ֆուրաժային կովից նա ստացավ 2743 լիտր կաթ:

Պետք է ամեն կերպ ոգնել ստախանով-

յան շարժման զարգացմանը կոլտնտեսային արտադրության մեջ և առաջավորների փորձը դարձնել մյուս շրջանների կոլտնտեսականների սեփականությունը:

1938 թվի վերջին գյուղատնտեսության բոլոր ճյուղերում մենք պետք է ունենանք հազարավոր այդպիսի առաջավոր ստախանովական կոլտնտեսականներ, վորոնք ցույց են տալիս կոլտնտեսային արտադրությունը վարելու լավագույն որինակներ:

## ԱՊՐԱՆՔԱՇՐՋԱՆԱՌՈՒԹՅՈՒՆԸ

Մեր կուսակցական կազմակերպությունների աշխատանքի կարևորագույն տեղամասերից մեկն է հանդիսանում ամենորյա ոգնությունն ու ղեկավարությունը կոոպերացիայի և առևտրի նկատմամբ:

Ապրանքաշրջանառության 1937 թվի պլանը կատարված է 423,3 միլիոն ռուբլով, կամ 95,7 տոկոսով: Հայկոոպի սիստեմի գծով՝ 91,3 տոկոսով, Հայառի գըծով՝ 103,2 տոկոսով, և Սննդառի գծով՝ 97,6 տոկոսով:

Առևտրական կազմակերպությունների ապրանքաշրջանառությունը վերջին յերկու տարվա ընթացքում աճել է ավելի քան





յերկու անգամ: Աճել են նաև ապրանքների շուկայական ֆոնդերը:

Սակայն մեր առևտրական կազմակերպությունները՝ Հայկոոպը, Հայառը, Սննդառը ապրանքներով դեռևս վատ են բավարարում բնակչության աճող պահանջը՝ նրա բարեկեցության աճման կապակցությամբ:

Ներկայումս գյուղական շրջաններում սպառողական կոոպերացիայի սիստեմի գըծով մենք ունենք 64 գյուղական խանութ, 31 շրջանային ունիվերսալ խանութ, 16 սննդամթերքային խանութ և 4 կուլտ-ապրանքների խանութ:

Հայկոոպի ապրանքաշրջանառության 1938 թվի առաջին յեռամսյակի պլանը գյուղում կատարված է 88,8 տոկոսով: Տնտեսական ու կուլտուրական նշանակություն ունեցող հիմնական ապրանքների վաճառման առաջադրանքները գյուղում սպառկոոպերացիայի կողմից չեն կատարվում: Շաքարի իրացման պլանը կատարված է 91,5 տոկոսով, աղինը՝ 94 տոկոսով, լվացքի ոճառինը՝ 78,3 տոկոսով, լուցկունը՝ 70,7 տոկոսով, կուլտ-ապրանք-

ներինը՝ 64,8 տոկոսով, անտառանյութերինը՝ 59 տոկոսով և այլն:

Հայկոոպի և Հայառևի սիստեմները չեն կատարում ապրանքների ապակենտրոնացված գնումների պլանները:

Մեր սպառկոոպմիությունները վատ են աշխատում նաև տեղական ապրանքները, հատկապես կոլտնտեսությունների ապրանքային արտադրանքն ապրանքաշրջանառության մեջ ներգրավելու բնագավառում: 1937 թվին իրացման պլանը մսի ու մսամթերքների գծով կատարված է 65 տոկոսով, կաթնամթերքների գծով՝ 25,2 տոկոսով, մրգի ու բանջարեղենի գծով՝ 46,1 տոկոսով:

Ապրանքաշրջանառության ասպարեզում կուսակցության և կառավարության առաջադրանքների թերակատարման հիմնական պատճառներն են հանդիսանում առևտրի վատ կազմակերպումը, ընդհատումներն առօրյա անհրաժեշտության ապրանքների վաճառքի ասպարեզում և վոչ ընթացիկ ապրանքների կուտակումը, վորի հետևանքով տեղի յեն ունենում ֆինանսական դժվարություններ:

Առևտրական կազմակերպությունների



ղեկավարների վատ աշխատանքի հետևանքով, առ 1-ն հունվարի 1938 թվի մենք շրջանառու միջոցների մեջ խզում ունենք Հայկոոպի գծով՝ 2159,0 հազար ռուբլով և Հայառևի գծով՝ 1,031,0 հազար ռուբլով:

Հայաստանի Կ(բ)Կ Կենտրոնական Կոմիտեն առանձնացրեց հատուկ հանձնաժողով՝ առևտրական կազմակերպությունների ֆինանսական վիճակն ստուգելու համար: Այդ հանձնաժողովն իր աշխատանքն արդեն ավարտել է և որերս հետազոտման արդյունքները կլսվեն Կենտկոմում ու միջոցներ ձեռք կառնվեն Հայկոոպի և Հայառևի ֆինանսական առողջացման գծով:

Ինչպես յերևում է այս բոլորից, ապրանքների անբավարար մատակարարման հիմնական պատճառը, ինչպես գյուղում այնպես և քաղաքում, հանդիսանում է առևտրական կազմակերպությունների վատ աշխատանքը:

Առաջ կար այսպիսի սովորություն, վոր յեթե վորևե ընկեր, կուսակցական կամ անկուսակցական, տապալվում եր աշխատանքի մեջ, նրան սովորաբար ուղարկում եյին առևտրի սիստեմը և դրա հետևանքով ստացվել եր ապրանքաշրջանառության

ցանցի ու առևտրական ղեկավար հիմնարկների կադրերի մեծ աղտոտում:

ՀամԿ(բ)Կ Կենտկոմի վորոշման համաձայն, ներկայումս կատարվում է ինչպես Հայկոոպի սիստեմի այնպես և պետառևտրի ղեկավար աշխատողների ուսումնասիրում և վերանայում:

Հայաստանի Կ(բ)Կ Կենտկոմի վորոշմամբ արդեն հանված է Հայկոոպի ղեկավար կազմը և այն լրիվին թարմացված է նոր, ստուգված կադրերով: Հայկոոպի գլուխ առաջ է քաշված ընկ. Սողոմոն Կարապետյանը, նրա տեղակալ՝ ընկ. Դավթյանը, յերիտասարդ, ընդունակ մի մարդ, վորը նոր է ավարտել բարձրագույն ուսումնական հաստատությունը և ունի առևտրական աշխատանքի բավականաչափ պրակտիկ փորձ:

Նոր պետեր են նշանակված Հայկոոպի համարյա բոլոր վարչություններում:

Վերանայված են Շրջսպառկոոպմիությունների ղեկավար կադրերը և ամենամոտիկ որերս կավարտվի Շրջսպառկոոպմիությունների ղեկավար կազմի կոմպլեկտավորումը:



Վերանայվում է նաև պետառևտրի սիստեմի ղեկավար կազմը:

Համաձայն ՀամԿ(բ)Կ Կենտկոմի դիրեկտիվի, արդեն ընտրված են լավագույն կոմունիստներ, վորոնք աշխատանքի կուղարկվեն առևտրական սիստեմում:

Հաշվետու ժամանակաշրջանում անբավարար է աշխատել Հայաստանի Առևտրի ժողկոմատը, վորը, ի դեպ, պետք է ասել ավելի շատ աղմկում է, քան թե գործ է կատարում:

Առևտրի ժողկոմատի կողմից բացակայել է ամուր ղեկավարությունն ապրանքաշրջանառության ցանցի նկատմամբ և Առևտրի ժողկոմատը քիչ է հոգ տարել առևտրի մեջ կուլտուրական մեթոդներ մտցնելու մասին:

Անբավարար են պատրաստվել նրա հիմնարկների կադրերը, այնպես և մանրածախ ցանցի աշխատողները:

Թույլ է կանանց ներգրավումն առևտրական ցանցի մեջ, մինչդեռ կանայք առևտրի սիստեմում իրենց ցույց են տվել վորպես այնպիսի աշխատողներ, վորոնք ավելի լավ են հաշվի առնում սպառողի կա-

րիքներն ու պահանջները ապրանքների ասպարիզում:

Ցեվս մեկ հարց առևտրի բնագավառից. այդ՝ պայքարն է հափշտակումների ու յուրացումների դեմ և ապրանքների փչացման դեմ:

Առ 1-ն հունվարի 1938 թվի Հայկոոպի սիստեմում հափշտակումների ու յուրացումների գումարը կազմում էր 1·664·0 հազար ռուբլի և Հայառի գծով՝ 532·0 հազար ռուբլի:

Շրջանների կուսակցական- խորհրդային կազմակերպություններն անբավարար պայքար են մղում այդ բնագավառում:

Յուրացնողներից չեն գանձվում նրանց կողմից հափշտակված պետական միջոցները և առևտրական հիմնարկների ղեկավարները նրանց մտցնում են դեբիտորների ցուցակի մեջ:

Այդ չարիքի դեմ անբավարար են պայքարում նաև դատախազական- դատական օրգանները: Գործերը տարիներով ընկած են մնում և հանցավորները պատասխանատվության չեն յենթարկվում:

Կուսակցական կազմակերպությունները— կուսակցության շրջանային կոմիտե-





ները պետք է ամենայն լրջությամբ վերաբերվեն առևտրական կազմակերպությունները աշխատողներով ամրացնելու հարցին և ամենամոտիկ ժամանակներս պետք է հասնեն բնակչության ապրանքներ մատակարարելու գործի օրինակելի կազմակերպման, ըստ վորում այնպիսի ապրանքներ, վորոնք համապատասխանում են խորհրդային սպառողի ճաշակին ու պահանջներին:

Այստեղ նաև պետք է նշել դատախազական-քննչական օրգանների անբավարար աշխատանքը:

ՀամԿ(բ)Կ Կենտկոմի դիրեկտիվի համաձայն, սկսվել է դատախազության օրգանների կադրերի և ժողդատավորների ուսումնասիրումն ու վերանայումը, այդ օրգանները թարմ, լավագույն կադրերով ամրացնելու նպատակով, վորոնք կարողանան ապահովել սոցիալիստական օրինականությունը:

## ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԿՐԹՈՒԹՅԱՆ ՎԻՃԱԿԸ

Ներկայումս մենք Հայաստանում ունենք 512 տարրական, 505 թերի միջնակարգ և 140 միջնակարգ դպրոց, վորտեղ սովորում են 265·300 յերեխա:

Միայն վերջին տարիներս պետությունը շրջաններում կառուցել է 178 տարրական և 63 միջնակարգ դպրոցների շենքեր:

Յերևան, Լենինական, Կիրովական քաղաքներում կառուցված են 13 յերկոմպլեկտանի դպրոցներ՝ 11.470 տեղով և 10 մեկկոմպլեկտանի դպրոցներ՝ 4000 տեղով:

Ներկայումս այդ դպրոցներն ապահովված են դասագրքերով, բացի հայոց լեզվի ընթերցանության 2—3 դասագրքերից ու գեղագրության ձեռնարկից: Սակայն պետք է նշել, վոր այդ դասագրքերն ուշ լույս տեսան և աշակերտների ձեռքը հասան ուսումնական տարին սկսելուց 2 նույնիսկ 3 ամիս հետո: Բացի դրանից, դասագրքերը հրատարակվում եյին անբավարար տիրաժով և վոչ բոլոր տարրական դպրոցներն են ապահովված դրանցով:

Վորպես ընդհանուր յերևույթ, տարրական դպրոցներում անբավարար է աշակերտների առաջադիմությունը: Վաղարշապատի շրջանի տարրական դպրոցների 2871 աշակերտներից 1937—38 ուսումնական տարվա առաջին կիսամյակում մայրենի լեզվից վատ գնահատական են ստացել 740 աշակերտ կամ 25,5 տոկոսը, թվաբանու-



թյունից վատ և շատ վատ գնահատական են ստացել 695 աշակերտ կամ 24 տոկոսը:

Յերրորդ և չորրորդ դասարանների աշակերտների ընդհանուր թվից աշխարհագրությունից վատ և շատ վատ գնահատական են ստացել 32,6 տոկոսը:

Բասարգեչարի շրջանում 1937—38 ուսումնական տարվա յերկրորդ քառյակում առաջին, յերկրորդ, յերրորդ և չորրորդ դասարանների բոլոր աշակերտներից մայրենի լեզվից վատ ու շատ վատ գնահատական են ստացել 32,7 տոկոսը, իսկ գերազանց գնահատական՝ բոլոր աշակերտների ընդամենը 9,5 տոկոսը: Թվաբանությունից վատ և շատ վատ գնահատական են ստացել 27,8 տոկոսը:

Նույնպիսի դրություն մենք ունենք նայեվ մյուս շրջաններում— Ազիզբեկովի, Աշտարակի և այլն:

Տարրական դպրոցների աշակերտության առաջադիմության ցուցանիշներն ուսումնական տարվա յերկրորդ կիսում այնքան էլ չեն բարելավվել, չափազանց բարձր է ինչպես մայրենի լեզվից, այնպես և թվաբանությունից թույլ աշակերտների տոկոսը:

Վատ առաջադիմության հիմնական պատճառը պետք է համարել ուսուցիչների անբավարար մեթոդական և ընդհանուր պատրաստությունը։

Բացակայում է ուսուցիչներին բավարար օգնությունն ու մեթոդական ղեկավարությունը շրջգործկոմների ժողովրդական կրթության բաժինների ու նրանց տեսուչների կողմից։

Անհրաժեշտ է, որ Լուսժողկոմատն ուժեղացնի ուսուցիչների վերապատրաստման և ուսումնական տարվա ընթացքում նրանց հրահանգման ուղղությամբ կիրառվող միջոցառումները։

Անհրաժեշտ է նաև բարձրացնել պահանջկոտությունն աշակերտների նկատմամբ։

Մեծ թերություններ են նկատվում լրիվ և ոչ լրիվ միջնակարգ դպրոցների դասավանդման գործում։

Միջնակարգ դպրոցների համար բնորոշ յերևույթ են դպրոցական շենքերի մեծ գերբեռնվածությունը՝ յերկհերթ պարապմունքները համարյա յուրաքանչյուր դպրոցում և աշակերտների մեծ թիվը մեկ դասարանում։ Այդ տեսակետից հատկապես



աչքի յեն ընկնում Յերևանի դպրոցները․ օրինակ՝ Շահումյանի անվան դպրոցում սովորում են 2400 աշակերտ, № 6 դպրոցում՝ 2200 և այլն։ Ձերժինսկու անվան դպրոցի 4-րդ դասարանում կան 53 աշակերտ, 6-րդ դասարանում՝ 50, 8-րդ դասարանում 41 աշակերտ։ Այդպիսի դրությունն անկասկած բացասաբար է անդրադառնում ուսման նորմալ ընթացքի վրա։

Հատկապես աննորմալ յերևույթ պետք է համարել, յերբ 8-րդ, 9-րդ ու 10-րդ դասարաններում դասավանդում են բարձրագույն կրթություն չունեցող ուսուցիչներ— միջնակարգ, իսկ յերբեմն էլ նույնիսկ թերի միջնակարգ կրթությամբ։

Հայաստանի բոլոր միջնակարգ դպրոցների վերջին յերեք դասարաններում դասավանդում են 757 ուսուցիչ։ Դրանցից միայն 314-ն ունեն բարձրագույն կրթություն, թերի բարձրագույն կրթություն ունեն 156-ը, միջնակարգ կրթություն՝ 272-ը, իսկ թերի միջնակարգ կրթություն՝ 15-ը։

Այսպիսով, ուսուցիչների 30 տոկոսից ավելին ունի միջնակարգ և թերի միջնակարգ կրթություն։ Ուսուցիչների այսպիսի կազմը, պարզ է, որ չի կարող ապահովել

սովորողների հարկ յեղած նախապատրաստումը բարձրագույն ուսումնական հաստատությունների համար։

Անհրաժեշտ է, վոր Հայաստանի Լուսժողկոմատն առաջիկա տարում հենց, լիկվիդացիայի յենթարկի այդ աննորմալ դրությունը։

Այստեղ նաև անհրաժեշտ է նշել գերազանցիկ աշակերտների միանգամայն անբավարար քանակը բարձր դասարաններում, ցած դասարանների համեմատությամբ։ Օրինակ՝ Պռոշյանի անվան դպրոցի 10-րդ դասարանում 31 աշակերտից միայն յերեքն են գերազանցիկ։ Յերրորդ դպրոցի 10-րդ դասարանում 49 աշակերտներից միայն մեկն է գերազանցիկ։ Կրուպսկայայի անվան դպրոցի 10-րդ դասարանում 31 աշակերտի մեջ չկա վոչ մի գերազանցիկ։ Բերիայի անվան դպրոցի 10-րդ դասարանում 40 աշակերտի մեջ չկա վոչ մի գերազանցիկ։

Բերված օրինակներն իրենք հենց խոսում են իրենց մասին։ Այն բանի կապակցությամբ, վոր բարձր դասարաններում համեմատաբար մեծ թվով ուսուցիչներ իրենց վորակով չեն համապատասխանում



իրենց կոչմանը, դասավանդումն էլ հենց այնտեղ անբավարար է։

Դրա պատճառը պետք է համարել նաև բարձր դասարանների ուսուցիչների գերբեռնվածությունը, վորոնք աշխատում են համատեղության կարգով և նրանց գերբեռնվածությունը նույնիսկ միենույն դըպրոցում։

Համ Կ(բ)Կ Կենտկոմի և ԽՍՀՄ Ժողկոմխորհի 1935 թվի սեպտեմբերի 3-ի վորոշումը՝ դպրոցներում ուսումնական ներքին ռեժիմի կազմակերպման հարցերի վերաբերմամբ, բացառիկ բարենպաստ պայմաններ ստեղծեց ուսուցչի համար։ Բայց պետք է նշել, վոր Լուսժողկոմատը և քաղխորհուրդների ու շրջգործկոմների ժողովրդական կրթության բաժինները դպրոցում ստեղծված այդ բարենպաստ պայմանները լիովին չեն ոգտագործել կոմունիստական դաստիարակությունը բարելավելու և դպրոցներում ուսման վորակը բարձրացնելու գործում։

Մի քանի դպրոցներում չի ամրացված ուսուցչի դերը կարգապահության, դպրոցական վորոշակի ռեժիմ ստեղծելու և ա-

չակերտների մեջ ուսման վորակը բարձրացնելու գործում:

Դրա հետևանքով, մի շարք դպրոցներում դեռևս գոյություն ունեն թափթփվածություն, անկուլտուրականություն, վորևե դաստիարակչական աշխատանքի բացակայություն և խուլիգանություն՝ յերեխաների մեջ:

Ձերժինսկու անվան դպրոցի վեցերորդ դասարանում 1938 թվի մարտի 3-ին 5 աշակերտ պարապմունքի յեն յեկել առանց տետրերի ու դասագրքերի: 9 աշակերտ հրաժարվեցին գրավոր աշխատանք կատարելուց: Աշակերտների մեծամասնությունը հրաժարվում եր դասը պատասխանելուց: Պարապմունքի ժամանակ դասարանում աղմուկ եր, անկարգություն, մի խումբ յերեխաներ զբաղված եյին հայելու խաղով, մյուսները ծաղիկներ եյին շպրտում և այլն:

Պարզվեց, վոր դասը յերրորդ անգամն ե կրկնվում, աշակերտների անբավարար առաջադիմության հետևանքով:

Այդ դպրոցի դիրեկտորն ե Կարո Այվազյանը, իսկ դասը վարում եր ուսուցիչ Ցերեմյանը:



Մաքսիմ Գորկու անվան դպրոցում, վորի դիրեկտորն ե Սպանդար Մովսիսյանը, առաջին դասարանում հայոց լեզվի դասի ժամանակ աշակերտներն ամբողջ ժամանակ աղմկում եյին և սուլում: Աշակերտներից մեկը գնդակը շպրտում եր դասարանի մեկ ծայրից մյուսը, թռչկոտում եր նստարանների վրա և փնտրում գնդակը. մեկ ուրիշ աշակերտ ամբողջ ժամանակ թռչում եր տեղից ու պար գալիս ուսուցչուհու առաջ:

Աշակերտներն իհարկե, դասը չեյին լսում, իսկ ուսուցչուհի Վ. Սարգսյանը վոչ մի միջոց ձեռք չեր առնում:

Դարձյալ մեկ բնորոշ օրինակ, մեր դպրոցներում յեղած կարգ ու կանոնի մասին:

Վաղարշապատի շրջանի Այաոլու գյուղի դպրոցում դասարանի բոլոր պատերը ծածկված են հին պլակատներով ու նկարներով: Դասասենյակի անկյուններում թափված են կոտրտված շշեր ու ապակի: Այնտեղ ել հենց գտնվում ե գործածության համար անպետք լվացարանը: Ջրի մի դույլ կա, հատակը ծածկված ե ցեխի շերտով (հատակն ըստ յերևույթին բոլորովին չեն լվանում), իսկ պահարանի գլխին դրված ե

անկողինը՝ չծածկված վիճակում: Ըստ յե-
րևույթին ինչ որ մեկը գիշերում է դա-
սարանում:
Այդ դպրոցի դիրեկտորն է Համբար-
ձում Գասպարյանը, իսկ որպես շրջկոմի
քարտուղար աշխատում է Ռուբեն Աբրա-
համյանը:
Այս փաստերը բավական են, որպեսզի
հետևություններ անել դպրոցներում յեղած
կարգ ու կանոնի և ռեժիմի մասին, ան-
կուլտուրականության ու դաստիարակչա-
կան աշխատանքի բացակայության մասին,
և այն մասին, որ Հայաստանի Լուսժող-
կոմատն ու նրա տեղական օրգանները,
կոմյերիտական կազմակերպություններն ու
կուսակցության շրջկոմները բոլշևիկորեն
չեն իրականացնում Համ Կ(բ)Կ Կենտկոմի
որոշումը դպրոցի մասին և մեր դպրոցնե-
րը շարունակում են տառապել այն բոլոր
հիվանդություններով, որոնց դեմ ուղղ-
ված է կուսակցության և կառավարության
որոշումը:
Հայաստանում մենք ունենք 8 ԲՈՒՀ:
Այդ ԲՈՒՀ-երում սովորում են մոտ 5000
ուսանող: Այս տարի ԲՈՒՀ-երը բաց են
թողնում 778 յերիտասարդ մասնագետ:



Այդ թվում՝ 47 բժիշկ, 77 ագրոնոմ, 132
անասնաբույժ, 82 զոոտեխնիկ, 97 ինժե-
ներ, 443 մանկավարժ և այլն:
Վերջին տարում ԲՈՒՀ-երն զգալի նվա-
ճումներ ունեն: Կա պարապմունքների կա-
յուն դասատախտակ, ամրացված է ուսում-
նական կարգապահությունը, բարձրացվում
է յուրացման աստիճանը, կրճատվում է
բաց թողնված ժամերի թիվը և այլն:
Վերջին տարվա ընթացքում մեծ թվով
յերիտասարդ կադրեր աշխատանքի յեն ա-
ռաջ քաշված որպես դիրեկտորներ, դե-
կաններ, ամբիոնների վարիչներ: Նրանց
մեջ շատ կան կուսակցության անդամներ ու
կոմյերիտականներ:
Նոր յերիտասարդ կադրերի պատրաստ-
ման համար բոլոր ԲՈՒՀ-երում կան աս-
պիրանտուրաներ, որտեղ սովորում են
124 ասպիրանտ, որից կուսակցականներ և
կոմյերիտականներ՝ 76 մարդ:
Դուք բոլորդ գիտեք, որ ժողովրդի
թշնամիները հատկապես ձգտում էյին ամ-
րանալ բարձրագույն ուսումնական հաստա-
տություններում, իրենց քայքայիչ վնասա-
րարական աշխատանքը կատարելու համար:
Դասավանդման ասպարեզում նրանք

հատկապես զգալի վնաս հասցրեցին Պետական համալսարանում։

Ստեղծվել էր «պրոֆեսորների» մի կաստա՝ Ձեզ հայտնի դաշնակ-փաշխատ աղա Աշխարհբեկ Քալանթարի գլխավորությամբ, որը հավաքել էր մի խումբ շովինիստների և հակախորհրդային աշխատանք էր կատարում Պետհամալսարանում։

Մինչև վերջին օրերս ժողովրդի թշնամիները գիտական և մանկավարժական աշխատանքին մոտիկ չէին թողնում մեր երիտասարդ, ընդունակ կադրերին և ամեն կերպ խոչընդոտ էին հանդիսանում գիտական աստիճաններ տալուն։

ԲՈՒՀ-երի մեր ղեկավարները և կուսակցական կազմակերպությունները պետք է անհապաղ ձեռնամուխ լինեն ծրագրերի վերանայմանը՝ բարձրագույն դպրոցի աշխատողների խորհրդակցության ընկեր Մոլոտովի տված ցուցումների հիման վրա, և օգնեն երիտասարդ գիտական կադրերին՝ գիտության բոլոր նվաճումները ժողովրդին հաղորդելու նրանց ձգտման մեջ։

Ընկեր Ստալինը բարձրագույն դպրոցի աշխատողների հետ ունեցած հանդիպման



ժամանակ, 1938 թվի մայիսի 17-ին գիտության զարգացման մասին ասաց.

«Գիտության ծաղկման կենացը, այն գիտության, որն իր հին ու ճանաչված ղեկավարներին թույլ չի տալիս ինքնագոհ պարփակվել գիտության մոգուրների կեղևի մեջ, գիտության մոնոպոլիստների կեղևի մեջ, որը հասկանում է գիտության երիտասարդ աշխատողների հետ գիտության հին աշխատողների դաշինքի իմաստը, նշանակությունը, ամենազորությունը, որը կամավոր կերպով ու հաճույքով գիտության բոլոր դռները բաց է անում մեր երկրի երիտասարդ ուժերի առաջ և հնարավորություն է տալիս նրանց նվաճելու գիտության բարձունքները, որն ընդունում է, որ ապագան պատկանում է գիտության երիտասարդությանը»։

ԲՈՒՀ-երի մեր կուսակցական կազմակերպությունները պետք է դրանից անեն համապատասխան հետևություններ և բոլոր պայմանները ստեղծեն մեր երիտասարդ խորհրդային գիտական աշխատողների կող-

մից գիտության բարձունքների նվաճման համար:

Պետք է նշել, սոցիալ—տնտեսական գիտությունների դասավանդման անբավարար դրվածքը ԲՈՒՀ-երում: Այդ առարկաների ավանդողների մեծամասնությունը չունի բավարար պատրաստություն: Սոցիալ-տնտեսական դիսցիպլինների ավանդողներից վոչ մեկը չունի գիտական աստիճան: Նրանք ծանրաբեռնված են զանազան հիմնարկներում համատեղության կարգով կատարվող չափից դուրս աշխատանքով և քիչ են աշխատում իրենց վորակավորումը բարձրացնելու վրա:

Անհրաժեշտ է, վոր Հայաստանի Կ(բ)Կ Կենտրոնական Կոմիտեն վերանայի այդ դասախոսական կադրերը, նրանց ամրացնի վորոշ ԲՈՒՀ-երի, ազատելով այլ աշխատանքներից:

Պետք է նշել, վոր ժողովրդի թշնամիների մերկացումից հետո, ԲՈՒՀ-երի կուսակցական կազմակերպությունները համապատասխան հետեվություններ չարեցին իրենց համար, դասավանդման ասպարեզում վնասարարության հետևանքները լիկվիդացիայի յենթարկելու ուղղությամբ և չվերա-



կառուցեցին իրենց աշխատանքն ուսանողության ու պրոֆեսոր-դասախոսական կազմի մեջ կուսակցական - քաղաքական աշխատանքն ուժեղացնելու տեսանկյունով:

Անհրաժեշտ է, վոր կուսակցության ռայկոմները և Յերևանի Քաղկոմն ամեն կերպ օգնություն ցույց տան ԲՈՒՀ-երի կուսակցական կազմակերպություններին՝ ուսանողության և դասախոսների մեջ կուսակցական- քաղաքական ու դաստիարակչական աշխատանքը բարձրացնելու, ԲՈՒՀ-երում ուսանողների ընդունելությունը կազմակերպելու, հանրակացարանները և ուսումնական շենքերը նոր ուսումնական տարվա համար նախապատրաստելու գործում:

Յես հատկապես կուզեյի կանգ առնել մի հարցի վրա, վորը վերաբերում է ստորին ու բարձրագույն դպրոցներին: Այդ, դպրոցներում ռուսաց լեզվի դասավանդման հարցն է:

Մինչև Հայկական ԽՍՀ Կենտգործկոմի և Ժողկոմխորհի վերջին վորոշումը՝ ռուսաց լեզվի դասավանդման մասին, ռուսաց լեզվի վորպես առարկայի, դասավանդումը կազմակերպված եր չափից դուրս վատ, Հայաստանի Լուսժողկոմատի նախկին ղե-

մից գիտության բարձունքների նվաճման համար:

Պետք է նշել, սոցիալ—տնտեսական գիտությունների դասավանդման անբավարար դրվածքը ԲՈՒՀ-երում: Այդ առարկաներն ավանդողների մեծամասնությունը չունի բավարար պատրաստություն: Սոցիալ-տնտեսական դիսցիպլիններ ավանդողներից վոչ մեկը չունի գիտական աստիճան: Նրանք ծանրաբեռնված են զանազան հիմնարկներում համատեղության կարգով կատարվող չափից դուրս աշխատանքով և քիչ են աշխատում իրենց վորակավորումը բարձրացնելու վրա:

Անհրաժեշտ է, վոր Հայաստանի Կ(բ)Կ կենտրոնական Կոմիտեն վերանայի այդ դասախոսական կադրերը, նրանց ամրացնի վորոշ ԲՈՒՀ-երի, ազատելով այլ աշխատանքներից:

Պետք է նշել, վոր ժողովրդի թշնամիների մերկացումից հետո, ԲՈՒՀ-երի կուսակցական կազմակերպությունները համապատասխան հետեվություններ չարեցին իրենց համար, դասավանդման ասպարեզում վնասարարության հետևանքները լիկվիդացիայի յենթարկելու ուղղությամբ և չվերա-



կառուցեցին իրենց աշխատանքն ուսանողության ու պրոֆեսոր-դասախոսական կազմի մեջ կուսակցական - քաղաքական աշխատանքն ուժեղացնելու տեսանկյունով:

Անհրաժեշտ է, վոր կուսակցության ռայկոմները և Յերևանի Քաղկոմն ամեն կերպ օգնություն ցույց տան ԲՈՒՀ-երի կուսակցական կազմակերպություններին՝ ուսանողության և դասախոսների մեջ կուսակցական- քաղաքական ու դաստիարակչական աշխատանքը բարձրացնելու, ԲՈՒՀ-երում ուսանողների ընդունելությունը կազմակերպելու, հանրակացարանները և ուսումնական շենքերը նոր ուսումնական տարվա համար նախապատրաստելու գործում:

Յես համառոտակի կուզեյի կանգ առնել մի հարցի վրա, վորը վերաբերում է ստորին ու բարձրագույն դպրոցներին: Այդ, դպրոցներում ռուսաց լեզվի դասավանդման հարցն է:

Մինչև Հայկական ԽՍՀ Կենտգործկոմի և Ժողկոմխորհի վերջին վորոշումը՝ ռուսաց լեզվի դասավանդման մասին, ռուսաց լեզվի վորպես առարկայի, դասավանդումը կազմակերպված եր չափից դուրս վատ, Հայաստանի Լուսժողկոմատի նախկին ղե-

կավարների բացահայտ նացիոնալիստական քաղաքականության հետևանքով:

Հայաստանի շատ տարրական ու միջնակարգ դպրոցներում ռուսաց լեզուն չէր ուսումնասիրվում ուսուցիչներ չլինելու պատճառով, իսկ ռուսաց լեզվի ժամերը հատկացվում էին այլ առարկաների:

Միջնակարգ դպրոցն ավարտող աշակերտները ռուսաց լեզուն չգիտենալու պատճառով ի վիճակի չեն ԲՈՒՀ-երում սովորած ժամանակամիջոցում օգտվել ռուսերեն դասագրքերից և գրականությունից ու քննությունները և ստուգումները տալիս սահմանափակվում են կարդացված դասախոսությունների օգնությամբ:

ԲՈՒՀ-երն ավարտողները և իրենց գիտական գիտելիքները խորացնել ցանկացողները չեն կարողանում ընդունվել Միության գիտական հիմնարկները, ռուսաց լեզուն չգիտենալու պատճառով: Էլ չենք խոսում այն մասին, որ ռուսաց լեզուն մեզ անհրաժեշտ է որպես մի լեզու, որով միմյանց հետ հաղորդակից են լինում ԽՍՀՄ-ի ժողովուրդներն ու Միութենական հանրապետությունները: Մասնագետների կադրերը պետք է գիտենան ռուսաց լեզուն,



որպեսզի փորձի փոխանակություն կատարեն Միութենական մյուս հանրապետությունների մասնագետների կադրերի հետ:

Հայկական ԽՍՀ Կենտգործկոմի և Ժողկոմխորհի որոշման համաձայն, ընթացիկ տարվա աշնանից ռուսաց լեզվի պարտադիր դասավանդում է մտցվում տարրական դպրոցների յերկրորդ դասարանից և լրիվ միջնակարգ դպրոցների յերրորդ դասարանից: Բոլոր ԲՈՒՀ-երում մտցվում է ռուսաց լեզվի քննության պարտադիր հանձնումը:

Հայաստանի Լուսժողկոմատն արդեն միջոցառումներ է կիրառում տարրական ու միջնակարգ դպրոցների ռուսաց լեզվի ուսուցիչների պատրաստման ու վերապատրաստման ուղղությամբ: Լուսժողկոմատին կից ստեղծված է ռուսաց լեզվի և գրականության ուսումնասիրման գործը ղեկավարող հատուկ վարչություն:

Վատ է մեղանում դասագրքերի հրատարակման գործը: Լույս ընծայվող դասագրքերի որակը, նրանց ձևավորումը հեռու յե բավարար լինելուց: Դասագրքերը յերբեմն լույս են ընծայվում քերականական ու վոճական կոպիտ սխալներով, տեքստի,

անունների, թվականների աղավաղումներով և այլն:

Անհրաժեշտ է, վորպեսզի Լուսժողկոմատը և Հայպետհրատը բարելավեն դասագրքերի հրատարակումը և ընթացիկ տարում դրանք հրատարակվեն ժամանակին, ուսումնական տարվա սկզբից աշակերտներին ապահովելով բոլոր դասագրքերով:

Մի քանի խոսք դպրոցների շինարարության մասին:

1938 թվին խոշոր կապիտալ ներդրումներ են նախատեսված դպրոցների և սոցիալ-կուլտուրական հիմնարկների շինարարության բնագավառում:

Հաստատված պլանի համաձայն Հայաստանի Լուսժողկոմատը պետք է կառուցի և մինչև ուսումնական տարվա սկիզբը շահագործման հանձնի քաղաքային տիպի 11 դպրոցական շենք՝ Յերևան, Լենինական, Կիրովական քաղաքներում և այլ տեղերում:

Գյուղական վայրերում, այդ թվում նաև նոր կազմակերպված շրջաններում, կառուցվում են 29 դպրոց: Ընթացիկ տարում շենքեր են կառուցվում 17 մանկապարտեզների համար: Դրանցից 14-ը գյուղական շրջաններում:



Այս տարի պետք է ավարտվի Պետական Հանրային գրադարանի և Մանկավարժական ինստիտուտի հանրակացարանի շենքերը:

Լուսժողկոմատը 1938 թվին պետք է իրացնի մոտ 18 միլիոն ռուբլի, սակայն դպրոցական շենքերի շինարարության ընթացքը անբավարար է:

Վո՛չ Լուսժողկոմատը, վո՛չ շինարարական կազմակերպությունները, վո՛չ շրջգործկոմները բավականաչափ միջոցներ ձեռք չեն առնում, վորպեսզի այդ շինարարական օբյեկտները ժամկետին շահագործման հանձնվեն:

Կուսակցական և խորհրդային կազմակերպությունները պետք է այդ բոլոր կառուցվող օբյեկտները վերցնեն իրենց հսկողության տակ և ամեն կերպ օգնություն ցույց տան նրանց, ինչպես շինանյութերը ժամանակին փոխադրելու, այնպես և շինարարական աշխատանքները կազմակերպելու գործում:

Պետք է ծավալել մրցությունը կառուցողների միջև և շրջանների միջև, կառուցվող դպրոցները ժամանակին շահագործման հանձնելու համար:

# ԱՌՈՂՋԱՊԱՀՈՒԹՅՈՒՆ

Առողջապահության բնագավառում տարեց տարի աճում է բուժհիմնարկների ցանցը։

Յեթե հիվանդանոցներ և ստացիոնար բուժհիմնարկներ 1936 թվին յեղել են քաղաքում՝ 30 և գյուղում՝ 22, ապա 1937 թվին արդեն կար քաղաքում՝ 41 և գյուղում՝ 30։

1938 թվին մենք ունենք քաղաքում՝ 51 և գյուղում՝ 50։ Այսպիսով, բուժհիմնարկների ցանցն ավելի շատ աճում է գյուղում, նկատի ունենալով գյուղի վատ սպասարկումն անցյալում։

Աճում է նաև ամբուլատորիաների ու այլ բուժհիմնարկների ցանցը։

Մեծ ուշադրություն է հատկացվում մայրության և մանկության բուժօգնության ու պահպանմանը։ 1936 թվին մշտական մըսուրներ քաղաքում յեղել են 58-ը և գյուղում՝ 12։ 1937 թվին մենք ունեյինք քաղաքում՝ 65 և գյուղում՝ 13, իսկ 1938 թըվին մենք ունենք քաղաքում՝ 83 և գյուղում՝ 27։

Զգալիորեն ընդարձակվել է ծննդատների ցանցը։ Ընթացիկ տարում լրացուցիչ կերպով կառուցվում է 9 ծննդատուն։





Առողջապահության համար կատարվող հատկացումների տեսակարար կշիռը հանրապետության բյուջեյի մեջ գնալով աճում է.

Յեթե 1937 թվին պետական ու տեղական բյուջեյով շինարարությանը հատկացված է յեղել 53·458·300 ռուբլի, ապա 1938 թըվին նախատեսնված է 56·580·000 ռուբլի։

Ընթացիկ տարում կապիտալ ներդրումների ընդհանուր գումարն Առժողկոմատի գծով կազմում է 10·960·000 ռուբլի։

Առողջապահության օրգանների և կուսակցական - խորհրդային կազմակերպությունների ուշադրությունը պետք է կենտրոնացած լինի հատկապես գյուղական վայրերում ամբուլատորիաները, բուժկայաններն ու հիվանդանոցները կանոնավոր վիճակի բերելու, նրանց կահավորումը բարելավելու և բուժանձնակազմի կողմից բնակչության ե՛լ ավելի ուշադիր սպասարկման վրա։

Առողջապահության բնագավառում չկարգավորված հարց է գյուղական բուժհիմնարկների ապահովված չլինելն ինչպես բըժիշկներով, այնպես և միջին բուժանձնակազմով։

ՀամԿ(բ)Կ Կենտկոմի և ԽՍՀՄ Ժողկոմխորհի՝ «Բժշկական միջին կադրերի մասին» վորոշումից հետո, կազմակերպված

են 20 միջնակարգ բժշկական դպրոցներ, որոնք մոտակա տարում լիովին կբավարարեն Առժողկոմատի պահանջը:

Ինչ վերաբերում է բժիշկների պատրաստության հարցին, ապա Հայաստանի Բժշկական ինստիտուտի շրջանավարտները լիովին չեն բավարարում հանրապետության պահանջը և մոտակա տարիներս անհրաժեշտ կլինի ավելացնել ուսանողների ընդունելությունը Բժշկական ինստիտուտի առաջին կուրսում:

Մի քանի խոսք Արզնիի և Դիլիջանի մեր կուրորտների մասին:

Արզնիում շարունակվում է կուրորտի շինարարությունը և ընթացիկ տարում կավարտվի նոր կլինիկական սանատորիան՝ 180 մահճակալով:

1938 թվին բարեկարգվում են կուրորտները, կատարվում են կանաչապատման մեծ աշխատանքներ և Առժողկոմատը նախագծում է վաննայի նոր շենքի կառուցումն Արզնիում, յեկող տարվանից:

Այս տարի Արզնիի և Դիլիջանի կուրորտների բարեկարգման ու լավագույն սպասարկման համար բաց է թողնված 1·036·000 ռուբլի:



## ԱՇԽԱՏԱՎՈՐԱԿԱՆ ԼԱՅՆ ՄԱՍՍԱՆԵՐԻ ՆՅՈՒԹԱԿԱՆ ԲԱՐԵԿԵՑՈՒԹՅԱՆ ԱՃՈՒՄԸ

Հայաստանի ժողովրդական տնտեսության անշեղ աճման հիման վրա, աճում է աշխատավորների լայն մասսաների նյութական բարեկեցությունը:

Տարեց-տարի աճում է նաև բանվորների ու ծառայողների թիվը: 1937 թվականին նրանց քանակը հասավ 111 հազար մարդու, 1935 թվի 101 հազարի փոխարեն:

Աշխատավարձի ընդհանուր ֆոնդը 1937 թվին հասավ 372·703·000 ռուբլու, 1935 թվի 259·464·000 ռուբլու փոխարեն:

Մեկ բանվոր - ծառայողի տարեկան միջին աշխատավարձը 1937 թվին բարձրացավ մինչև 3·400 ռուբլու, 1935 թվի 2·500 ռուբլու փոխարեն:

Աճում են նաև բանվորների ու ծառայողների սոցիալական ապահովագրության համար կատարվող հատկացումները:

1938 թվին տեղական ու պետական բյուջեյով սոցիալական ապահովագրության համար նախատեսված է 13 միլիոն ռուբլի:

Բարելավվել է աշխատավորների կուլտ-կենցաղային սպասարկումը և տարեց-տարի աճում են բնակարանային - կոմունալ շինա-

բարության համար կատարվող հատկացումները:

Արհեստակցական միությունները, վորոնք պետք է որ-ավուր հոգ տանեն աշխատավորների կուլտուրական-կենցաղային պահանջների բավարարման մասին, թույլ են աշխատում և անբավարար չափով են կապված ու ղեկավարում իրենց ստորին պրոֆկազմակերպություններին՝ ձեռնարկություններում և հիմնարկներում:

Հայաստանում կան պրոֆմիությունների յերկու կենտրոնական կոմիտեներ — Միջնակարգ ու տարրական դպրոցների և Բըժըշկա-սանիտարական աշխատողների, ու այլ պրոֆմիությունների 23 հանրապետական վարչություններ:

Յեթե նրանք լավ աշխատեյին և կատարեյին իրենց հիմնական խնդիրը, ապա մեծ չափով կբարելավվեր աշխատավորների կուլտուր-կենցաղային պահանջների բավարարումը:

Կուսակցական կազմակերպությունները պետք է ուժեղացնեն իրենց ղեկավարությունը պրոֆմիությունների նկատմամբ, վորպես աշխատավորների մասսայական կազմակերպությունների, և պետք է ստիպեն պրոֆմիութենական ղեկավար որգան-



ներին՝ օպերատիվ կերպով ղեկավարել իրենց ստորին կազմակերպությունները:

## ԱՐՎԵՍՏ ՅԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Անցնում եմ գրականության և արվեստի հարցերին:

Այս ճակատում մեր կուսակցական կազմակերպությունների առջև կանգնած են հսկայական խնդիրներ:

Ֆաշիզմի աջ-տրոցկիստական ու դաշնակցական գործակալների մերկացումից հետո, վորոնք բուն եյին դրել գրողների ղեկավարության մեջ, Գրողների միությունը մինչև այժմ չի արել համապատասխան հետևություններ և չի վերակառուցել իր աշխատանքը:

Ստեղծագործական աշխատանքի փոխարեն Գրողների միության մեջ թագնված ձևով տեղի յե ունենում անսկզբունք պայքար և շարունակվում է յերիտասարդ, ընդունակ գրողների ճնշումը:

Գրողների միության վարչությունը փոխանակ պայքարելու այդ խմբակայնության դեմ և արմատախիլ անելու ժողովրդի թշնամիների վնասարարական գործունեության մնացորդները, քողարկում է այդ

բարության համար կատարվող հատկացումները:

Արհեստակցական միությունները, վորոնք պետք է որ–ավուր հոգ տանեն աշխատավորների կուլտուրական – կենցաղային պահանջների բավարարման մասին, թույլ են աշխատում և անբավարար չափով են կապված ու ղեկավարում իրենց ստորին պրոֆկազմակերպությունների՝ ձեռնարկություններում և հիմնարկներում:

Հայաստանում կան պրոֆմիությունների յերկու կենտրոնական կոմիտեներ — Միջնակարգ ու տարրական դպրոցների և Բըժըշկա – սանիտարական աշխատողների, ու այլ պրոֆմիությունների 23 հանրապետական վարչություններ:

Յեթե նրանք լավ աշխատեյին և կատարեյին իրենց հիմնական խնդիրը, ապա մեծ չափով կբարելավվեր աշխատավորների կուլտուր – կենցաղային պահանջների բավարարումը:

Կուսակցական կազմակերպությունները պետք է ուժեղացնեն իրենց ղեկավարությունը պրոֆմիությունների նկատմամբ, վորպես աշխատավորների մասսայական կազմակերպությունների, և պետք է ստիպեն պրոֆմիութենական ղեկավար օրգան–



ներին՝ օպերատիվ կերպով ղեկավարել իրենց ստորին կազմակերպությունները:

# ԱՐՎԵՍՏ ՅԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Անցնում եմ գրականության և արվեստի հարցերին:

Այս ճակատում մեր կուսակցական կազմակերպությունների առջև կանգնած են հսկայական խնդիրներ:

Ֆաշիզմի աջ – տրոցկիստական ու դաշնակցական գործակալների մերկացումից հետո, վորոնք բույն եյին դրել գրողների ղեկավարության մեջ, Գրողների միությունը մինչև այժմ չի արել համապատասխան հետևություններ և չի վերակառուցել իր աշխատանքը:

Ստեղծագործական աշխատանքի փոխարեն Գրողների միության մեջ թաղնված ձևով տեղի յեն ունենում անսկզբունք պայքար և շարունակվում է յերիտասարդ, ընդունակ գրողների ճնշումը:

Գրողների միության վարչությունը փոխանակ պայքարելու այդ խմբակայնության դեմ և արմատախիլ անելու ժողովրդի թըշնամիների վնասարարական գործունեության մնացորդները, քողարկում է այդ

մկրտչյան և ըստ էության խրախուսում է նրանց։

Վերջերս հրավիրված՝ յերիտասարդ գըրողների խորհրդակցությունը ցույց տվեց, վոր մենք ունենք շատ մեծ թվով ընդունակ յերիտասարդ գրողներ, վորոնց մինչև այժմ առաջ չեն քաշում և չեն տպագրում նրանց յերկերը։

Մինչդեռ այդ յերիտասարդ գրողներն ավելի մոտիկ են կանգնած բանվորների ու գյուղացիների կյանքին, ավելի լավ են հասկանում ու հաղորդում աշխատավորների ներկայիս հարուստ, գեղեցիկ կյանքը։

Անհրաժեշտ է առաջ քաշել խորհրդային գրողների այդ յերիտասարդ կադրերը, վորոնք ավելի լավ կղեկավարեն Հայաստանի գրողներին, քան թե նրանք, ովքեր այժմ կանգնած են Գրողների միության ղեկավարության գլուխ։

Յերիտասարդ գրողների՝ վերջերս լույս տեսած գրքերը՝ Շիրազի «Արևի յերկիրը» (վեպ՝ բանաստեղծությամբ), Արամունիի բանաստեղծությունները, Սաաֆիի նովելները՝ նոր աստիճան են նշանակում մեր գըրականության զարգացման մեջ։

Պետք է ամեն կերպ խրախուսել և օգնել



մեր այն գրողներին, վորոնք արտացոլում են մեր ժողովրդի ներկայիս հրճվալից կյանքը. գրողներին, վորոնք ցույց են տալիս ստախանովականների նոր կյանքն ու աշխատանքը, մեր հզոր հայրենիքի հերոսներին, նրանց անխորտակելի կամքը նոր նվաճումների նկատմամբ, նրանց հայրենասիրությունը, անսահման սերն ու նվիրվածությունը մեր սոցիալիստական հայրենիքին։

Այնպիսի գրողներ, ինչպես Դեմիրճյանը, Արազին և ուրիշները, պետք է իրենց ստեղծագործական հարուստ փորձն ու վարպետությունը հաղորդեն յերիտասարդ գրողներին։

Խորհրդային Գրողների միությունը պետք է ամենամոտիկ ժամանակում լիկվիդացիայի յենթարկի գրողների մեջ յեղած խմբակայնությունը և արմատապես վերակառուցի Գրողների միության աշխատանքը։

Այդ վերակառուցման ժամանակ ուշադրության կենտրոնում պետք է դրված լինեն մեր գրողների գաղափարական-քաղաքական մակարդակի բարձրացման հարցերը, բոլշևիզմին տիրապետելու և խորհրդային թեմատիկայի վերաբերյալ գեղարվեստական մեծ յերկեր ստեղծելու հարցերը։

Սունդուկյանի անվան Դրամատիկ թատրոնը լավագույն թատրոններից մեկն է, որն ունի թատերական հիանալի ուժեր:

Բայց այդ թատրոնը ևս պետք է վերակառուցի իր աշխատանքը, որպեսզի բավարարի մեր խորհրդային հանդիսատեսի կուլտուրական աճող պահանջը:

Թատրոնի 1937–38 թվականի ռեպերտուարի 15 բեմադրությունների մեջ չկար ոչ մի բեմադրություն ժամանակակից թեմատիկայով:

Թատրոնի զարգացումը կարծես թե դեմ է առել Պարոնյանի «Բաղդասար աղբարի» դարաշրջանին:

Յեթե ժամանակակից թեմատիկան չըդառնա նոր ռեպերտուարի հանգուցային հարցը, ապա մեր Պետական Դրամատիկ թատրոնը շատ հետ կմնա Միութենական մյուս հանրապետությունների թատրոնների համեմատությամբ:

Արվեստի գործերի Կոմիտեի նախկին ղեկավարների վնասարարության հետևանքով Հայաստանի յերաժշտական կուլտուրան մինչև այժմ չի կարողացել կազմակերպվել, որպեսզի իր նվաճումները ցույց տա Խորհրդային Միության ժողովուրդներին:





Մեր Պետական օպերան Խորհրդային իշխանության զավակն է: Նա ապրում է իր գոյության միայն 6–րդ տարին:

Այս վեց տարվա ընթացքում Պետօպերայում աճել ու զարգացել են մեր կատարողների յերիտասարդ կադրերը և իրենց ուժերով նրանք հաջողությամբ բեմադրում են Հայկական օպերաները՝ Տիգրանյանի «Անուշը», Սպենդիարյանի «Ալմաստը», Հարո Ստեփանյանի «Քաջ Նազարն» ու «Լուսաբացինը» և Այվազյանի «Թափառնիկոսը»:

Հայկական օպերային թատրոնը տվել է ոչ վատ բեմադրություններ՝ «Խաղաղ Դոնը», «Յեվգենիյ Ոնեգինը», «Ջրահարսը» և այլ բեմադրություններ ռուսական օպերաներից, ռուսերեն լեզվով:

Օպերային թատրոնի ստեղծումը Յերևանում, շարժիչ ուժ հանդիսացավ ձևով ազգային ու բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրայի զարգացման գործում, մեր յերիտասարդ կոմպոզիտորների աճման ու զարգացման գործում:

Օպերային թատրոնը մեծ յեռանդով վերակառուցում է իր աշխատանքը և պատրաստվում է աշնանային սեզոնին: Կան բոլոր հույսերը, որ մոտիկ ժամանակում

թատրոնը կկարողանա իր նվաճումները ցույց տալ Խորհրդային Միության ժողովուրդներին:

Հայաստանի թատերական կյանքում վերջին տարվա նվաճումներից մեկն է Ռուսական Պետական Դրամատիկ թատրոնի ստեղծումը Երևանում, որն իր լավ բեմադրություններով ժողովրդականություն է վայելում բնակչության մեջ:

Ավելորդ է խոսել մեզ համար Ռուսական թատրոնի ունեցած նշանակության մասին, որը ծանոթացնում է ռուս մեծ ժողովրդի արվեստի հետ:

Երևանում վաղուց գոյություն ունի Ադրբեջանական Դրամատիկ թատրոն: Անհրաժեշտ է, որ Արվեստի գործերի կոմիտեն ուժեղացնի այդ թատրոնին ցույց տրվող օգնությունը և ստեղծի բոլոր պայմանները նրա հետագա զարգացման համար:

Իր գոյության ժամանակաընթացքում Հայկինոն բաց է թողել մի շարք արժեքավոր կինոնկարներ, ինչպես՝ «Նամուսը», «Զարեն», «Գիքորը», «Պեպոն» և «Մեքսիկական դիվանագետները», որից հետո վերջին յերկու տարվա ընթացքում չեր տալիս ոչ մի նկար:



Միայն 1937 թվի վերջերին Հայկինոն բաց թողեց «Կարո» նկարը, իսկ Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի ընտրությունների առթիվ՝ «Ծաղկող Հայաստանը» և հենց նոր բաց է թողել «Զանգեզուր» կինոնկարը:

ԽՍՀՄ Ժողկոմխորհի 1938 թ. մարտի 23-ի որոշմամբ Հայկինոն վերակառուցվեց: Կինոարտադրությունը բաժանված է կինոնկարների վարձարկումից և կինոթատրոնների շահագործումից:

Այդ վերակառուցումը պետք է ուժեղացնի կինոարտադրությունը Հայաստանում:

Այստեղ պետք է նշել, որ Հայկինոյի աշխատողների կադրերը ոչ բավարար արագությամբ են վերակառուցվում նկարների թեմատիկան փոխելու գործում:

Կրկնվում են յերկու թեմաներ՝ Անդրկովկասում կապիտալիզմի զարգացման ժամանակ հայերի նահապետական կյանքի թեման և Հայաստանում դաշնակցական տիրապետության ու քաղաքացիական պատերազմի ժամանակաշրջանի թեման: Մեր կինոաշխատողները՝ սցենարիստները, օպերատորներն ու ռեժիսորները դրանից այն

կողմ գնալ վոչ մի կերպ չեն կարողանում:

Հայկինոյի աշխատողները պետք է հաշվի առնեն Հայկինոյի վերակառուցման և իրենց աշխատանքը մեր ստախանովականների, կոլտնտեսային դաշտերի աշխատավորների, սահմանապահների ու մեր ծաղկող յերիտասարդության հերոսական կյանքի ցուցադրման տեսանկյունով վերակառուցելու ամբողջ կարևորությունը:

Գրականության և արվեստի ճակատում անբավարար չափով են վերացվում նացիոնալիստական-դաշնակցական տարրերի ղեկավարության հետևանքները:

Վորոշ մարդիկ չարունակում են կրել նացիոնալիստական տենդենցներ, փորձելով հարմար դեպքում դրանք քարշ տալ իրենց աշխատությունների մեջ: Այդպիսի մարդիկ վոչ մի կերպ չեն կարողանում հեռանալ Րաֆֆու՝ շովինիստական դաշնակցական գաղափարների այդ վոգեշնչողի, յերկերից: Նրանք մի՛շտ չե, վոր բավարար հակահարված են ստանում ազնիվ անկուսակցականների կողմից:

Հայաստանի բոլշևիկների կարևորագույն խնդիրներից մեկն է՝ անդուլ պայքա-



րը բուրժուական նացիոնալիզմի դեմ, նրա բոլոր այլաձևություններում:

Յուրաքանչյուր կոմունիստ և խորհրդային իշխանության ու իր հայրենիքին նվիրված անկուսակցական պետք է պարզի իր համար, վոր թուլացնելով պայքարը նացիոնալիզմի արտահայտությունների դեմ, նա դրանով իսկ ոգնում է ժողովրդի թշնամիներին:

Մեր խնդիրն է՝ ուժեղացնել աշխատավոր մասսաների դաստիարակությունը պրոլետարական ինտերնացիոնալիզմի վոգով:

Բոլշևիկյան կուսակցությունը չի ժխտում ազգային տարբերությունները և նա, ով արհամարհում ու անտեսում է աշխատավորության լայն մասսաների ազգային զգացմունքները, նա վոչ մի ընդհանուր բան չունի բոլշևիզմի հետ և վոչինչ չի հասկացել մեր կուսակցության ազգային քաղաքականությունից, ազգային հարցի վերաբերյալ Լենինի ու Ստալինի ուսմունքից:

Իդեոլոգիական ճակատի, արվեստի ու գրականության մեր աշխատողները պետք է լավ յուրացնեն այդ և ինչպես հարկն է աշխատեն ազգայնական տենդենցները վերացնելու ուղղությամբ և զարգացնեն իսկական

խորհրդային կուլտուրան՝ ձևով ազգային ու բովանդակությամբ սոցիալիստական:

## ՊՐՈՊԱԳԱՆԴԻՍՏԱԿԱՆ ՈՒ ԱԳԻՏԱՑԻՈՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՎՈՐԱԿԸ

Ի՞նչ վիճակումն է գտնվում պրոպագանդիստական ու ագիտացիոն աշխատանքը կուսակցական կազմակերպության մեջ:

Քաղուսուցման բոլոր տեսակի խմբակներում ընդգրկված են 13,828 կոմունիստ: ՀամԿ(բ)Կ պատմության ուսումնասիրող խմբակներ ունենք 606, վորոնց մեջ ընդգրկված են 9,549 մարդ:

Ավելի քան 3 հազար կոմունիստներ ընդգրկված չեն կուսակցական ուսուցման ցանցում:

Վորպես բնորոշ յերևույթ պետք է նշել, վոր քաղուսուցման մեջ ընդգրկված չեն մեծ թվով կուսկազմակերպիչներ ու սկզբնական կազմակերպությունների կուսկոմիտեների քարտուղարներ, ինչպես նաև շրջանային ակտիվը: Մինչդեռ բոլշևիզմին տիրապետելու հարցն ամենագլխավորն է ամբողջ կուսակցական աշխատանքում:

ՀամԿ(բ)Կ Կենտկոմի Փետրվար - Մարտյան Պլենումի վորոշումը կարող է լիովին



իրագործվել միայն այն դեպքում, յերբ կատարվեն ընկեր Ստալինի ցուցումները բոլշևիզմին տիրապետելու և կադրերի քաղաքական դաստիարակության մասին:

Ընկեր Ստալինը ՀամԿ(բ)Կ Կենտկոմի Փետրվար - Մարտյան Պլենումում կուսակցական աշխատանքի թերությունների և տրոցկիստական ու այլ յերկերեսանիների լիկվիդացիայի յենթարկելու միջոցառումների մասին իր զեկուցման մեջ կուսակցական կազմակերպությունների առջև դրեց հետևյալ խնդիրը՝

«Անհրաժեշտ է տեխնիկային տիրապետելու հին լոզունգը, վորը համապատասխանում եր Շախտիի ժամանակաշրջանին, լրացնել կադրերի քաղաքական դաստիարակության, բոլշևիզմին տիրապետելու և մեր քաղաքական դյուրահավատությունը լիկվիդացիայի յենթարկելու նոր լոզունգով, վորը լիովին համապատասխան լինի այժմյան մեր ապրած ժամանակաշրջանին»:

Կուսուսուցման ցանցում ներգրավված կոմունիստների քանակության մասին վերևում իմ բերած թվերից կարելի յե հետևություն անել, վոր կուսակցական կազմակեր-

պությունները բոլշևիզմին տիրապետելու հարցը դեռևս ինչպես հարկն է չեն դրել իրենց աշխատանքի ուշադրության կենտրոնում։

Քաղուսուցման գոյություն ունեցող խմբակները տառապում են մեծ թերություններով, նրանք կոմպլեկտավորված են քաղպատրաստականության տարբեր մակարդակ ունեցող կուսանդամներից ու թեկնածուներից։ Պատրաստված ընկերների կողքին խմբակներում պարապում են միանգամայն անգրագետներ։

Օրինակ՝ Ղամարլվում, կուսակցության պատմության ուսումնասիրման խմբակում, պատրաստված կոմունիստների կողքին, վորոնք ինքնուրույն կերպով օգտվում են դասագրքերից, պարապում են կիսագրագետ ընկերները, վորոնք իրենց կիսագրագիտության հետևանքով վատ են յուրացնում կարդացածը։

Ալավերդու շրջանում սխալ է կոմպլեկտավորված Սանահինի կուսկազմակերպության քաղգրագիտության խմբակը, վորտեղ կուսակցության մեկ անդամի՝ ընկ. Գևորգյանի անգրագիտության ու նյութը վատ յուրացնելու պատճառով ծրագիրը



ձգձգվում է նաև խմբակի մյուս ունկնդիրների համար, պարապմունքները դառնում են անհետաքրքիր։

Կուսակցության մի քանի շրջկոմներ չեն ղեկավարում կուսակցական պրոպագանդան, այդ գործը լիովին վերավստահելով կուլտպրոպբաժնի վարիչին, իսկ յերբեմն ել շրջկոմի հրահանգչին։

Օրինակ՝ Կալինինոյի շրջկոմը մինչև այժմ չի ավարտել կուսակցական ուսուցման ցանցի կոմպլեկտավորումը և ռայկոմը չգիտե, թե ինչպիսի թերություններ կան այդ խմբակների աշխատանքում։

Կուսակցական ուսուցման յերկրորդ կարևորագույն թերությունն է պրոպագանդիստների թույլ պատրաստությունը, հատկապես գյուղական շրջաններում։

Շրջկոմները և Հայաստանի Կ(բ)Կ Կենտրոնական Կոմիտեյի կողմից չեն կատարվել ՀամԿ(բ)Կ Կենտկոմի ցուցումները պրոպագանդիստական կադրերի պատրաստման ու վերապատրաստման մասին։

1937 թվին ՀամԿ(բ)Կ Կենտկոմը միջոցներ եր բաց թողել 434 պրոպագանդիստների վերապատրաստման համար, սակայն վերապատրաստվել են միայն 96 մարդ։

Ագիտատորների վերապատրաստման ՀամԿ(բ)Կ կենտկոմի պլանով նախատեսված 200 մարդուց չի վերապատրաստվել ոչ մի մարդ։

Քաղուսուցման խմբակներում աշխատող 1,264 պրոպագանդիստներից կարմիր պրոֆեսուրայի ինստիտուտի ավարտածներ են 5 մարդ, կոմ. ԲՈՒՀ-եր և Մարքսիզմ-Լենինիզմի դասընթացներն ավարտածներ՝ 290 մարդ, կուսխորհրդային դպրոցներն ավարտածներ՝ 252 մարդ, պրոպագանդիստների վերապատրաստման դասընթացներն ավարտածներ՝ 243 մարդ, իսկ ավելի քան 300 պրոպագանդիստներ չունեն կուսակցականքաղաքական կրթություն։

Պրոպագանդիստների այդպիսի պատրաստությունը պահանջում է սիստեմատիկ աշխատանք կատարել նրանց հետ և պարբերաբար ուղարկել պրոպագանդիստների վերապատրաստման դպրոցները, նրանց քաղաքական գիտելիքների մակարդակը բարձրացնելու համար։

1937 թվի սեպտեմբերից հետո 3-ամսյա պրոպագանդիստական դասընթացներում պատրաստվել են 395 պրոպագանդիստներ։ Ընթացիկ տարում, Հայաստանի Կ(բ)Կ





կենտկոմի որոշման համաձայն, պրոպագանդիստների 4-ամսյա դասընթացներում վերապատրաստվելու յեն 250 պրոպագանդիստներ։

Բացի դրանից, Լենինականում գործում է պրոպագանդիստական դպրոց, վորն այս տարի բաց է թողնելու 50 նոր պրոպագանդիստներ, և Յերևանում՝ պրոպագանդիստների հանրապետական դպրոցը, վորտեղ ընդգրկված են 37 ունկնդիրներ. դպրոցի աղբբեջանական խմբում սովորում են 11 մարդ։

Իրենց աշխատանքով պրոպագանդիստներին պետք է օգնեն շրջկոմներին կից գոյություն ունեցող կուսկաբինետները։ Ընդամենը շրջկոմներին կից կան 39 կուսկաբինետ և 15 կուսկաբինետ եվ խոշոր սկզբնական կուսկազմակերպությունների կուսկոմիտեներին կից։

Շրջկոմներին կից կազմակերպված են նաև պրոպագանդիստական սեմինարներ։

Կուսկաբինետների և պրոպագանդիստական սեմինարների մեծամասնությունն անբավարար են աշխատում և մեթոդական օգնություն ցույց չեն տալիս պրոպագանդիստներին։

Կուսակցական պրոպագանդայի ղեկավարությունը պետք է անմիջականորեն իրենց ձեռքը վերցնեն շրջկոմների առաջին քարտուղարները և անձամբ ծանոթանան խմբակներում քաղուսուցման ընթացքին, պարբերաբար հրավիրելով պրոպագանդիստների խորհրդակցություններ, օգնություն ցույց տալով նրանց կուսակցական լուսավորության ցանցի մեջ ուսուցումը կազմակերպելու գործում:

Շրջկոմները և սկզբնական կուսկազմակերպությունները պետք է պարզեն իրենց համար, որ առանց պրոպագանդիստական աշխատանքի ուժեղացման չի կարող լինել կուսակցական - քաղաքական աշխատանքի վերելք:

## ՔԱՂԱՔԱԿԱՆ ԳՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՎԻՃԱԿԸ

Վերջին ժամանակներս մեծապես բարելավվել է կուսակցական - քաղաքական գրականության հրատարակումը՝ հայերեն լեզվով, քաղուսուցման ցանցի խմբակների համար:

Հրատարակվել է ընկեր Ստալինի զեկուցումը Խորհուրդների Արտակարգ 8-րդ համագումարում, 300 հազար տիրաժով:





Հրատարակվել է ընկեր Ստալինի զեկուցումը ՀամԿ(բ)Կ Կենտկոմի 1937 թվի փետրվար - մարտյան Պլենումում, 100 հազար տիրաժով:

Հրատարակվել է ընկ. Յարոսլավսկու «ՀամԿ(բ)Կ պատմության ուրվագծեր» գիրքը 25 հազար տիրաժով:

Քաղգրագիտության խմբակների համար հրատարակվել են՝ «Մեր հայրենիքը» և «ԽՍՀՄ-ն ու կապիտալիզմի յերկրները» — յուրաքանչյուրը՝ 25 - հազարական տիրաժով:

Հայերեն լեզվով, 3-րդ հրատարակությամբ լույս է ընծայվել ընկեր Ստալինի «Լենինիզմի հարցերը» 25 հազար տիրաժով և Լենինի յերկերի լիակատար ժողովածույի 3-րդ հատորը — «Կապիտալիզմի զարգացումը Ռուսաստանում»:

Օրերս լույս կտեսնեն Լենինի յերկերի լիակատար ժողովածույի 8-րդ հատորը, Ստալինի «Մարքսիզմը և ազգային գաղութային հարցը», Մարքսի և Ենգելսի «Կոմունիստական կուսակցության մանիֆեստը», Լենինի՝ «Իմպերիալիզմը որպես կապիտալիզմի բարձրագույն ստադիան» — Լենինի՝ «Պետություն և հեղափոխությու-

նը» և ընկեր Ստալինի «Լենինիզմի հարցերից» առանձին գրքերով ու բրոշյուրներով 12 գիրք ու բրոշյուր, յուրաքանչյուրը՝ 25 հազար տիրաժով:

Պատրաստվում են յերկրորդ հրատարակության Լենինի 6-հատորյակը և Լենին-Ստալին ժողովածուն՝ «Համկ(բ)կ պատմության ուսումնասիրման շուրջը», վորպես ձեռնարկ կուսակցական լուսավորության ցանցի համար:

## ՄԱՄՈՒԼ

Պրոպագանդայի և ագիտացիայի գործում մեծ դեր է խաղում մեր մամուլը:

Ներկայումս Հայաստանում հրատարակվում է հանրապետական 9 թերթ և 7 ժուռնալ, 28 շրջանային թերթ և 10 բազմատիրաժ թերթ, տարեկան 50 միլիոն տիրաժով:

Այս տարվա ապրիլից սկսեց լույս տեսնել նաև հանրապետական կոմյերիտական «Ստալինեց» թերթը և Համկ(բ)կ Կենտկոմի վորոշմամբ Ղափանում լույս է տեսնելու ամենորյա շրջանային թերթ:

Ինչպես կենտրոնական, այնպես և շրջանային թերթերի մեծամասնության թերու-



թյունն է՝ անբավարար կապն ինչպես կուսակցական, այնպես և անկուսակցական մասսաների հետ, վորի հետևանքով մամուլի եջերին են թափանցում չստուգված նյութեր, վորոնք հաճախ վարկաբեկում են թերթը:

Որինակ՝ «Խորհրդային Հայաստան» թերթի 1938 թվի ապրիլի 10-ի № 82-ում, առաջին եջի վրա տպված եր Հովակիմ Փարսադանյանի լուսանկարը, տակը նշելով թե նա յերկարամյա բանվորական ստաժ ունեցող ստախանովական է և առաջ է քաշված վորպես Մեղրու Կոնսերվի գործարանի ցեխի վարիչ:

Մինչդեռ ստուգման ժամանակ պարզվեց, վոր նա այդ գործարանի միմիայն կուլտաշխատողն է, վոչ ստախանովական է վոչ բանվոր, վոչ ել առաջքաշված:

Լինում են նաև դեպքեր, յերբ թերթում տպում են մեկի լուսանկարը, իսկ տակը գրում ուրիշի ազգանունը:

Հաճախ մեր թերթերում պատասխանատու խմբագիրների անուշադիր աշխատանքի հետևանքով թույլ են տրվում քաղաքական սխալներ, վորոնք խեղաթյուրում են կուսակցության վորոշումները:

նը» և ընկեր Ստալինի «Լենինիզմի հարցերից» առանձին գրքերով ու բրոշյուրներով 12 գիրք ու բրոշյուր, յուրաքանչյուրը՝ 25 հազար տիրաժով։

Պատրաստվում են յերկրորդ հրատարակության Լենինի 6-հատորյակը և Լենին-Ստալին ժողովածուն՝ «ՀամԿ(բ)Կ պատմության ուսումնասիրման շուրջը», վորպես ձեռնարկ կուսակցական լուսավորության ցանցի համար։

## ՄԱՄՈՒԼ

Պրոպագանդայի և ագիտացիայի գործում մեծ դեր է խաղում մեր մամուլը։

Ներկայումս Հայաստանում հրատարակվում է հանրապետական 9 թերթ և 7 ժուռնալ, 28 շրջանային թերթ և 10 բազմատիրաժ թերթ, տարեկան 50 միլիոն տիրաժով։

Այս տարվա ապրիլից սկսեց լույս տեսնել նաև հանրապետական կոմյերիտական «Ստալինեց» թերթը և ՀամԿ(բ)Կ Կենտկոմի վորոշմամբ Ղափանում լույս է տեսնելու ամենորյա շրջանային թերթ։

Ինչպես կենտրոնական, այնպես և շրջանային թերթերի մեծամասնության թերու-





թյունն է՝ անբավարար կապն ինչպես կուսակցական, այնպես և անկուսակցական մասսաների հետ, վորի հետևանքով մամուլի եջերն են թափանցում չստուգված նյութեր, վորոնք հաճախ վարկաբեկում են թերթը։

Որինակ՝ «Խորհրդային Հայաստան» թերթի 1938 թվի ապրիլի 10-ի № 82-ում, առաջին եջի վրա տպված եր Հովակիմ Փարսադանյանի լուսանկարը, տակը նշելով թե նա յերկարամյա բանվորական ստաժ ունեցող ստախանովական է և առաջ է քաշված վորպես Մեղրու Կոնսերվի գործարանի ցեխի վարիչ։

Մինչդեռ ստուգման ժամանակ պարզվեց, վոր նա այդ գործարանի միմիայն կուլտաշխատողն է, վոչ ստախանովական է վոչ բանվոր, վոչ ել առաջքաշված։

Լինում են նաև դեպքեր, յերբ թերթում տպում են մեկի լուսանկարը, իսկ տակը գրում ուրիշի ազգանունը։

Հաճախ մեր թերթերում պատասխանատու խմբագիրների անուշադիր աշխատանքի հետևանքով թույլ են տրվում քաղաքական սխալներ, վորոնք խեղաթյուրում են կուսակցության վորոշումները։

Օրինակ՝ Լենինականի «Բանվոր» թերթը՝ որգան կուսակցության քաղկոմի, և Գորիսի շրջանային «Ստալինյան դրոշով» թերթը «Կուսակցության ղեկավար որգանների ընտրությունների մասին» ՀամԿ(բ)Կ Կենտկոմի հրահանգի հրապարակումից հետո հոդվածներ եյին զետեղել՝ նվիրված կուսակցական որգանների ընտրություններին, վորոնց մեջ սկզբնական կուսակցական կազմակերպություններին «պարզաբանել եյին» թե կուսկոմիտեյի քարտուղարի ընտրությունն անց ե կացվում փակ (գաղտնի) քվեարկությամբ, և դրանով իսկ ապակողմնորոշել սկզբնական կուսկազմակերպություններին:

Մեծ թերություն պետք ե համարել թերթերի ու ժուռնալների գեղարվեստական վատ ձևավորումը, իսկ հաճախ ել դրա լիակատար բացակայությունը:

Աչքի յե զարնում խմբագրական աշխատողների անփութություն ու փնթիությունը թերթի ձևավորման գործում:

Ինչպես կենտրոնական, այնպես և շրջանային թերթերի մեր խմբագիրները քիչ են աշխատում թերթի վոճի ու լեզվի վրա:

Թերթերում լույս տեսնող հոդվածնե-





րը բավարար չափով չեն խմբագրվում, վորպեսզի դրանք հասկանալի դարձվեն ընթերցողների լայն մասսաների համար:

Այս բոլոր հարցերն անկասկած դեմ են առնում մեր թերթերի խմբագրությունների աշխատողների կադրերին և կուսակցական կազմակերպությունների ղեկավարմանը:

Պետք ե ուժեղացնել կուսակցական ղեկավարությունը մամուլի նկատմամբ, խմբագրական աշխատողների ղեկավար կազմը մոտեցնել կուսակցական որգաններին, հատկապես կուսակցության շրջանային կոմիտեներին:

Մեր մամուլի խնդիրն ե՝ ուժեղացնել կուսակցական կազմակերպությունների կյանքի լուսաբանումը, ամեն կերպ ծավալելով կուսակցական, խորհրդային, տնտեսական և այլ կազմակերպությունների աշխատանքի մեջ յեղած թերությունների քննադատությունը և ինքնաքննադատությունը:

Մեր բոլշևիկյան մամուլը հետևելով մեր կուսակցության Կենտրոնական որգան «Պրավդա»-ի տրադիցիաներին, պետք ե ամեն կերպ օգնի մեր կուսակցական կազմա-

կերպությունների՝ աշխատավորների լայն մասսաներին կուսակցության լոզունգների շուրջը, ՀամԿ(բ)Կ Կենտկոմի և Խորհրդային կառավարության վորոշումների շուրջը համախմբելու գործում:

## ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ—ԿԱԶՄԱԿԵՐՊՉԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՄԱՍԻՆ

Կուսակցության 17-րդ համագումարում ընկեր Ստալինը խոսելով կազմակերպչական աշխատանքի բնագավառում յեղած խնդիրների մասին, մատնանշեց, վոր անհրաժեշտ է՝

«1) Այսուհետև էլ առաջ մղել մեր կազմակերպչական աշխատանքը կուսակցության քաղաքական գծի պահանջների ուղղությամբ:

2) Կազմակերպչական ղեկավարությունը բարձրացնել ու հասցնել քաղաքական ղեկավարության մակարդակին:

3) Հասնել այն բանին, վոր կազմակերպչական ղեկավարությունը լիովին ապահովի կուսակցության քաղաքական լոզունգների և վորոշումների կենսագործումը»:

Այս խնդիրների կատարումը պահանջում էր վճռականորեն վերակառուցել կուսակցական որգանների աշխատանքը, մեծ կոնկրետություն և ոպերատիվություն ապահովել նրանց ղեկավարության մեջ:





Մեր կուսակցական կազմակերպությունները, ժողովրդի թշնամիների քայքայիչ աշխատանքի հետևանքով, վորոնք սողոսկել եյին կուսակցական ղեկավար որգանների մեջ, չկարողացան լիովին իրացնել կուսակցության առաջնորդ ընկեր Ստալինի ցուցումները:

Կուսակցության 11-րդ համագումարին Հայաստանի Կոմկուսակցության մեջ կան կուսակցության անդամներ 14·797 մարդ, կուսակցության թեկնածուներ՝ 4·617 մարդ· ընդամենը կոմունիստներ— 19·414 մարդ:

Սկզբնական կուսկազմակերպությունների թիվը կազմում է 1407:

Կուսակցության մեջ նոր անդամներ ընդունելու մասին Համ Կ(բ)Կ Կենտկոմի վորոշումից հետո, 1936 թվի նոյեմբերի 1-ից մինչև 1937 թվի հոկտեմբերի 1-ը կուսակցության թեկնածու յեն ընդունված յեղել ընդամենը 393 մարդ և թեկնածությունից

կերպությունների՝ աշխատավորների լայն մասսաներին կուսակցության լոզունգների շուրջը, ՀամԿ(բ)Կ Կենտկոմի և Խորհրդային կառավարության վորոշումների շուրջը համախմբելու գործում:

## ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ—ԿԱԶՄԱԿԵՐՊՉԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՄԱՍԻՆ

Կուսակցության 17-րդ համագումարում ընկեր Ստալինը խոսելով կազմակերպչական աշխատանքի բնագավառում յեղած խնդիրների մասին, մատնանշեց, վոր անհրաժեշտ է՝

«1) Այսուհետև էլ առաջ մղել մեր կազմակերպչական աշխատանքը կուսակցության քաղաքական գծի պահանջների ուղղությամբ:

2) Կազմակերպչական ղեկավարությունը բարձրացնել ու հասցնել քաղաքական ղեկավարության մակարդակին:

3) Հասնել այն բանին, վոր կազմակերպչական ղեկավարությունը լիովին ապահովի կուսակցության քաղաքական լոզունգների և վորոշումների կենսագործումը»:

Այս խնդիրների կատարումը պահան-





ջում եր վճռականորեն վերակառուցել կուսակցական որգանների աշխատանքը, մեծ կոնկրետություն և ոպերատիվություն ապահովել նրանց ղեկավարության մեջ:

Մեր կուսակցական կազմակերպությունները, ժողովրդի թշնամիների քայքայիչ աշխատանքի հետևանքով, վորոնք սողոսկել եյին կուսակցական ղեկավար որգանների մեջ, չկարողացան լիովին իրացնել կուսակցության առաջնորդ ընկեր Ստալինի ցուցումները:

Կուսակցության 11-րդ համագումարին Հայաստանի Կոմկուսակցության մեջ կան կուսակցության անդամներ 14·797 մարդ, կուսակցության թեկնածուներ՝ 4·617 մարդ· ընդամենը կոմունիստներ— 19·414 մարդ:

Սկզբնական կուսկազմակերպությունների թիվը կազմում է 1407:

Կուսակցության մեջ նոր անդամներ ընդունելու մասին Համ Կ(բ)Կ Կենտկոմի վորոշումից հետո, 1936 թվի նոյեմբերի 1-ից մինչև 1937 թվի հոկտեմբերի 1-ը կուսակցության թեկնածու յեն ընդունված յեղել ընդամենը 393 մարդ և թեկնածությունից

կուսակցության անդամ են փոխադրվել 526 մարդ։

Իսկ 1937 թվի հոկտեմբերի 1-ից հետո ընկած ժամանակամիջոցում, այսինքն Հայաստանի Կ(բ)Կ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումից հետո, կուսակցության անդամության թեկնածու յեն ընդունվել 1784 մարդ և թեկնածությունից կուսակցության անդամ են փոխադրվել 1084 մարդ։

Այսպիսով, մինչև ՀԿ(բ)Կ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումը արհեստականորեն հետ եյին պահում մեր կուսակցության աճումը և Ամատունու, Ակոպովի ու մյուսների մերկացումից ու Կենտկոմից վռնդելուց հետո միայն ընդունելությունը կուսակցության մեջ ընթանում է նորմալ կարգով։

Չնայած կուսակցության նոր անդամների ընդունելության ուղղությամբ կուսակցության շրջկոմների կողմից կատարվող մեծ աշխատանքին, կան մի ամբողջ շարք փաստեր, վորոնք վկայում են կուսակցության մեջ ընդունելության հարցերի նըկատմամբ առանձին շրջկոմների և սկզբնական կուսակցական կազմակերպությունների վոչ լուրջ մոտեցման մասին։



Այդ կուսկազմակերպությունները չեն պահպանում Համ Կ(բ)Կ Կենտկոմի 1936 թվի սեպտեմբերի 20-ի վորոշմամբ սահմանված կարգը և մի շարք դեպքերում խախտում են մեր կուսակցության կանոնադրությունը։

Համարյա բոլոր շրջաններում կուսակցության մեջ ընդունվողների հարցաթերթիկը լրացվում է վոչ պարզ ու անկանոն, շատ հաճախ շրջկոմի քարտուղարները չեն լրացնում «սոցդրություն» սյունակը։ Այդ տեսակետից հատկապես աչքի յեն ընկնում կուսակցության Գորիսի, Իջևանի, Ամասիայի և Սիսիանի շրջկոմները։

Հաճախակի յեն դեպքերը, յերբ հարցաթերթիկը չի ստորագրվում կուսակցության մեջ ընդունվողների կողմից։ Մի շարք դեպքերում սկզբնական կուսկազմակերպությունների և կուսակցության շրջկոմների վորոշումները՝ կուսակցության մեջ ընդունելու մասին, չեն վավերացվում կնիքով ու շրջկոմի քարտուղարների ստորագրությամբ։ Այդպիսի փաստեր տեղի յեն ունեցել Ամասիայի շրջկոմում, Ղամարլվի, կոտայքի, Թալինի և այլ շրջաններում։

Լենինականի Քաղկոմում, Սիսիանի,

Գորիսի, Կիրովականի շրջկոմներում և Կի-
րովյան ռայկոմում խախտվել է ՀամԿ(բ)Կ
Կենտկոմի հրահանգը՝ կուսակցության մեջ
ընդունվելու մասին դիմումներ կազմելու
հարցում:

Այսպես օրինակ, Ալի Մուսաևը՝ Խան-
ջուղազ գյուղից (Կիրովականի շրջան) կու-
սակցության մեջ ընդունվելու մասին ներ-
կայացրել է ուրիշի կողմից գրված դիմում:
Սկզբնական կուսկազմակերպությունը և կու-
սակցության շրջկոմը գիտենալով այդ մա-
սին, չեն ուղղել այդ սխալը:

Վոմանք դիմումը ներկայացրել են տը-
պագրված ձևով, ինչպես այդ տեղի յե ու-
նեցել Լենինականի Քաղկոմում— Համբիկ
Կարապետյանի դիմումը՝ Մսի կոմբինատից
և Յերևան քաղաքի Կիրովյան ռայկոմում—
Վոսկեհատ Առաքելյանի դիմումը՝ Խճուղա-
յին վարչությունից:

Կուսակցության Գորիսի շրջկոմի դեկա-
վարները հնարամտություն են ունեցել կու-
սակցության մեջ նոր ընդունվողներից պա-
հանջել Զագսի մետրիքական վկայական,
ծննդյան թիվն ստույգ կերպով սահմանելու
համար, չհավատալով այլ փաստաթղթերի:
Յեվ նրանք, ովքեր չեյին կարողանում մետ-
րիքական ներկայացնել, չեյին ընդունվում
կուսակցության մեջ:

Սակավ չեն դեպքերը, յերբ ծառայող-
ներին ընդունվում են յերկրորդ կատեգորիա-
յով: Արթիկի շրջանում ՄՏ կայանի ավագ
ագրոնոմին— ծառայողի — կուսակցության
անդամության թեկնածու յեն ընդունել
յերկրորդ կատեգորիայով:

Չի պահպանվում նաև կուսակցության
կանոնադրությունը ծառայողներին կուսակ-
ցության մեջ ընդունելիս— 10 տարվա կու-
սակցական ստաժով հինգ յերաշխավորու-
թյուն ներկայացնել— Յերևան քաղաքի
Սպանդարյան ռայկոմում, կուսակցության
Վաղարշապատի և Գորիսի շրջկոմներում:

Մի շարք շրջաններում շրջկոմների քար-
տուղարները ձգձգել են կուսակցության մեջ
նոր ընդունվողների դիմումների քննությու-
նը:

Բերեմ յերկու օրինակ.

Ղափանի շրջանի Ագարակ գյուղի ըս-
կզբնական կուսկազմակերպությունն ընկ.
Գ. Բաբայանին կուսակցության մեջ է ըն-
դունել 1937 թվի հուլիսի 10-ին: Շրջկոմը
հաստատել է 1937 թվի դեկտեմբեր ամսին:

Բաբայանի գործը Կենտկոմում ստացվել է 1938 թվի փետրվարին։

Ալավերդու շրջանի Կալաչա գյուղի բոլշևիկյան կուսկազմակերպությունն ընկ. Նավասարդյանին կուսակցության մեջ է ընդունել 1937 թվի հուլիսի 30-ին, իսկ շրջկոմը նրան հաստատել է 1937 թվի դեկտեմբերի 19-ին։

Կենտկոմի կուսակցական ղեկավար օրգանների բաժինը նույնպես ուշացնում է դիմումները և ժամանակին յեզրակացություն չի ներկայացնում Կենտկոմի բյուրոյին՝ կուսակցության մեջ ընդունելու ժամանակ բոլոր պահանջները պահպանված լինելու մասին։

Առ 1-ն մայիսի 1938 թվի, բոլոր շրջկոմներում յեղել է կուսակցության մեջ ընդունելու վերաբերյալ քննության չառնված 779 գործ, իսկ Կենտկոմի կուսակցական ղեկավար օրգանների բաժնում— 1247 գործ՝ կուսակցության շրջկոմների վորոշումներով։ Անհրաժեշտ է կուսակցական կազմակերպությունների աշխատանքում յեղած այս մեծ թերությունն ամենամոտիկ ժամանակում լիկվիդացիայի յենթարկել և խստորեն պահպանել Համ Կ(բ)Կ Կենտկոմի հրահանգն այդ հարցի վերաբերյալ, սկսած բոլշևիկյան կուսկազմակերպություններից մինչև Հայաստանի Կ(բ)Կ Կենտկոմը։

Մի քանի կուսակցական կազմակերպություններում և կուսակցության շրջկոմներում, կուսակցության մեջ նոր անդամներ ընդունելու պրակտիկայում մեծ թերություն է հանդիսանում կուսակցության մեջ նոր ընդունվողների վոչ բավարար ստուգումը, վորի հետևանքով կուսակցության շարքերն եյին ընդունվել կասկածելի ու հակահեղափոխական տարրեր։

Վաղարշապատի շրջկոմը 1937 թվին թեկնածությունից 3-րդ կատեգորիայով կուսակցության անդամ եր փոխադրել Իբրահիմովին՝ Մեհմանդար գյուղից, բայց մինչև գործը Կենտկոմում քննվելը, Իբրահիմովը Ներքգործժողկոմատի օրգանների կողմից պատասխանատվության յենթարկվեց հակահեղափոխական գործունեության համար։

Մեղրու շրջկոմը 1938 թվին կուսակցության անդամ եր ընդունել վոմն Արամ Վոսկանյանի՝ Մեղրի գյուղից, վորը 1920 թվին յեղել է Նժդեհի բանդայում և ակտիվ կռվել է Խորհրդային իշխանության դեմ։ Այս փաստը նա թագցրել եր կուսակցությունից

և մերկացվեց նրա գործը Կենտկոմում քննելիս:

Ղափանի շրջկոմը 1937 թվի նոյեմբերին կուսակցության մեջ էր ընդունել Անդրեաս Վարդանյանին՝ Շիշկերտ գյուղից, որը 1920 թվին դաշնակների հետ միասին կռվել է Խորհրդային իշխանության դեմ. Կենտկոմում նրա գործը քննելիս մերժվեց նրա ընդունելությունը կուսակցության մեջ:

Մի շարք շրջաններ դեռևս թույլ են աշխատում կուսակցության մեջ նոր անդամներ ընդունելու ուղղությամբ:

Ամասիայի շրջանում, կուսակցության մեջ ընդունելությունը վերսկսելու մոմենտից մինչև այսօր, թեկնածու չեն ընդունվել միայն 6 մարդ, Ապարանի շրջանում՝ 30, Շամշադինի շրջանում՝ 42 և այլն: Չընայած մեծ ռեզերվին, Ալավերդու շրջանում կուսակցության մեջ ընդունվել են միայն 164 մարդ, Ղափանի շրջանում՝ 171 մարդ: Կուսակցության անդամների դանդաղ աճման պատճառն այդ շրջաններում, պետք է համարել թույլ՝ աշխատանքը համակրողների և անկուսակցական ակտիվի մեջ:



Ստեփանավանի շրջանում, կուսակցության մեջ համարյա բոլոր նոր ընդունվողները գանգատվում էին քաղխմբակների վատ աշխատանքից, կանոնավոր պարապմունքների բացակայությունից և թերթերն ու ժուռնալները ժամանակին տեղ չհասցնելուց:

Եթե շրջաններում կանոնավորված լիներ աշխատանքը համակրողների խմբակների մեջ, ապա կուսակցության աճումը կլիներ ավելի համաչափ և ընդունելության որակը կլիներ շատ ավելի բարձր:

Շրջաններում ընդամենը կա 782 համակրողների խմբակ, որոնց մեջ ընդգրկված են 6·094 մարդ:

Եթե դրան ավելացնենք դեռևս կուսակցության մեջ չներգրավված կոմերիտականների բազմաթիվ ակտիվը՝ ապա պարզ կլինի, որ Համ. Կ(բ)Կ շարքերը նոր անդամներ ընդունելու ուղղությամբ կուսակցական կազմակերպությունները դեռևս քիչ են աշխատում:

Համակրողների խմբակների աճումը հաշվետու ժամանակաշրջանում մի ամբողջ շարք շրջաններում յեղել է անբավարար: Կուսակցության նոր անդամների ընդունե-

լության և համակրողների խմբակներում ներգրավելու գործում ձգձգումներ են տեղի ունենում յերբեմն այն պատճառով, վոր կուսակցության առանձին անդամներ խուսափում են յերաշխավորություն տալուց: Որինակ՝ համակրող ընկ. Սարգիս Ավագյանը —Նորաշեն գյուղի կոլտնտեսության բրիգադիր, գանգատվում էր, վոր 1934 թըվից մինչև այժմ չի կարողանում մտնել կուսակցության մեջ յերաշխավորություններ չունենալու պատճառով: Ընկ. Ավագյանը ակտիվ հասարակական աշխատող է, յեղել է ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի ընտրությունների ոկրուգային ընտրական հանձնաժողովի նախագահի տեղակալ:

Կուսակցության Շամշադինի շրջկոմը 16 ամսվա ընթացքում համակրողների խմբակների մեջ ներգրավել է 17 մարդ, Իջևանի շրջկոմը՝ 17, Ղամարլվի շրջկոմը՝ 9, Ղափանի շրջկոմը՝ 46 և Յերևան քաղաքի Կիրովյան ռայկոմը՝ 28:

Այս փաստերը վկայում են, վոր չնայած կուսակցության մեջ ընդունելության գործում կատարված սխալների ուղղմանը, մեր մի քանի կուսակցական կազմակերպություններ բավականաչափ քաղաքական ու դաստիարակչական աշխատանք չեն ծավա-





լել համակրողների մեջ և կուսակցության շրջկոմներն ոգնություն ցույց չեն տալիս ակտիվ, գործնական աշխատանքում ստուգված աշխատողներին՝ կուսակցության մեջ ընդունվելու համար յերաշխավորություններ ստանալու գործում և նրանց թույլ են ներգրավում համակրողների խմբակների մեջ:

Նոր անդամների ընդունելությունը կուսակցության մեջ— քաղաքական լուրջ խնդիր է և կուսակցության շրջանային կոմիտեները պետք է ամենորյա ղեկավարություն ցույց տան սկզբնական կուսկազմակերպություններին, ժամանակին մատնանշելով և ուղղելով կուսակցության նոր անդամների ընդունելության գործում կուսկազմակերպությունների կողմից թույլ տըրված սխալները:

Կուսվաստաթղթերի ստուգման ու փոխանակման ժամանակ կուսակցությունից վտարվեցին 3·665 մարդ: Այդ աշխատանքի ժամանակ կուսակցական օրգանները թույլ տվեցին մեծ սխալներ: Կուսակցության շատ անդամներ վտարվել եյին աննշան զանցանքների համար, անգրագիտության ու պասսիվության համար:

Զնայած Հայաստանում թույլ տրված այդ սխալներն անհապաղ ուղղելու համար Համ Կ(բ)Կ Կենտկոմի ժամանակին ցուցումին, պասսիվության, քաղաքական անգրագիտության համար վտարվածների գործերը չէյին վերանայվել: Նրանց բողոքարկման դիմումներին մեխանիկորեն պատասխանումեյին մերժումով:

Համ Կ(բ) Կենտկոմի Հունվարյան Պլենումի ժամանակ բողոքարկման դիմումներ կային՝ Հայաստանի Կ(բ)Կ Կենտկոմում 1·071, Կուսկոլեգիայում՝ 178— ընդամենը՝ 1·249:

Համ Կ(բ)Կ Կենտկոմի Պլենումի վորոշմամբ, կուսակցական կազմակերպությունները պարտավոր եյին յերեք ամսվա ընթացքում քննության առնել այդ բոլոր դիմումները:

Պլենումի այդ դիրեկտիվը Հայաստանի Կ(բ)Կ Կենտրոնական Կոմիտեյի կողմից մինչև 11–րդ համագումարը կատարված է հետևյալ կերպ.— ընդամենը ՀԿ(բ)Կ Կենտկոմի կողմից քննության է առնվել 1080 բողոքարկման դիմում և կուսակցությունից վտարված անձանց 204 գործ, վորոնք ընդունված են յեղել կուսակցության առաջին ու յերկրորդ կատեգորիաներով:





Կուսկոլեգիայում քննության է առնված 584 դիմում: Այսպիսով ընդամենը քննության է առնվել 1868 դիմում: Հունվարյան Պլենումից հետո Կենտկոմում ստացվել է բողոքարկման 831 դիմում, Կուսկոլեգիայում 760 դիմում:

Կենտկոմում քննության է առնված ընդամենը 1·284 դիմում. կուսակցության մեջ վերականգնված են 692 մարդ, մերժված են՝ 539, կուսակցության թեկնածու յեն փոխադրված՝ 4, համակրողների շարքը՝ 3, հետաձգված է 46 դիմում:

Կուսկոլեգիայում քննության առնված 584 դիմումից վերականգնված են 264, մերժված՝ 310, թեկնածու փոխադրված՝ 10, համակրողների շարքը՝ 4:

Մի քանի շրջանային կոմիտեներ, ինչպես որինակ Ղափանի, Կալինինոյի, Համ. Կ(բ)Կ Կենտկոմի Հունվարյան Պլենումի դիրեկտիվը իրականացնելիս, ամենակոպիտ քաղաքական սխալներ եյին թույլ տալիս վտարվածների բողոքարկման դիմումների քննարկման ժամանակ: Այդ շրջկոմների քարտուղարները— Գրիգորյանը, և Մարտիրոսյանը ընկան մեկ ծայրահեղությունից մյուսը և սկսեցին կուսակցության մեջ

վերականգնել բացահայտորեն հակախորհրդային մարդկանց, վորոնք դաշնակների հետ միասին պայքարել են խորհրդային իշխանության դեմ:

Ղափանի շրջկոմի նախկին քարտուղար Գրիգորյանը վերականգնել եր այդպիսի 14 մարդու, միջնորդություն հարուցելով կենտկոմի առաջ՝ շրջկոմի վորոշումը հաստատելու մասին:

Կալինինոյի շրջկոմի քարտուղարը կուսակցության մեջ եր վերականգնել բոլորին հայտնի մի դաշնակի:

Կուսակցությունից վտարվածների բողոքարկման դիմումների քննության ժամանակ հախուռն մոտեցում եր թույլ տրվել նաև Լենինականի Քաղկոմում, ընկ. Իսրայելյանի քարտուղար յեղած ժամանակ:

Հայաստանի Կ(բ)Կ Կենտրոնական Կոմիտեն բեկանեց այդ վորոշումները և շրջանային կոմիտեներին նախազգուշացրեց բողոքարկման դիմումների քննության ժամանակ նրանց սխալ մոտեցման մասին:

Համ Կ(բ)Կ Կենտկոմի Հունվարյան Պլենումի վորոշման համաձայն, բոլոր նրանց, ովքեր կուսակցությունից վտարվելու ժամանակ հանվել եյին աշխատանքից և վերա-





կանգնվածներին պետք եր աշխատանքի տեղավորել մեկ ամսվա ընթացքում: Պլենումի ժամանակ կար աշխատանքից հանված 219 մարդ: Նրանք բոլորը մեկ ամսվա ընթացքում տեղավորվեցին համապատասխան աշխատանքի: Այսպիսով, կուսակցական կազմակերպությունները, ի կատարումն Պլենումի վորոշման, քննության են առել կուսակցական օրգաններում յեղած բոլոր բողոքարկման դիմումները: Կուսակցության անդամի իրավունքների մեջ վերականգնածներից, մինչև շրջանային կուսակցական կոֆերանսների ժամանակ կուսատոմսեր չեյին ստացել ավելի քան 200 մարդ: Դրա հանցանքն ընկնում է շրջկոմների և կենտկոմի Կուսղեկավար օրգանների բաժնի վրա:

Կուսակցական կազմակերպությունների անհետաձգելի խնդիրն է՝ մեկ—մեկ ու կես ամսվա ընթացքում քննության առնել մնացած 509 բողոքարկման դիմումները, վորոնք ստացվել են ՀամԿ(բ)Կ Կենտկոմի Հունվարյան Պլենումից հետո:

Համ Կ(բ)Կ Կենտրոնական Կոմիտեն և անձամբ ընկեր Ստալինը բազմիցս նախազգուշացրել են կուսակցական կազմակեր-

պություններին, որ դեպի առանձին կոմունիստների բախտը, կուսակցությունից վտարելու կամ վտարվածներին կուսակցության մեջ վերականգնելու հարցը, չի կարելի ունենալ թեթևամիտ, անհոգի-բյուրոկրատական, ոչ անհատական մոտեցում:

Հայաստանի Կ(բ)Կ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումից հետո կուսակցական կազմակերպությունները հսկայական աշխատանք են կատարել ժողովրդի դիմակավորված թշնամիներին ու նրանց գործակալներին մերկացնելու և կուսակցությունից վտարելու ուղղությամբ:

Այդ ժամանակաշրջանում մի ամբողջ շարք կուսկազմակերպություններ թույլ տվեցին քաղաքական կոպիտ սխալներ: Չստուգված ու չհիմնավորված նյութերի հիման վրա անհիմն կերպով կոմունիստներին վտարել են կուսակցությունից:

Ամենից ավելի մեծ սխալներ թույլ են տվել Ղափանի, Ալավերդու, Գորիսի շրջանների կուսկազմակերպությունները, Լենինականի Քաղկոմը, Երևան քաղաքի Սպանդարյան և Կիրովյան ռայկոմները:

Ես այստեղ օրինակներ չեմ բերի, քանի որ այդ սխալների մասին շատ է խոսվել շրջանային կոնֆերանսներում:



Մի քանի կուսակցական կազմակերպություններ, մոռանալով ՀամԿ(բ)Կ Կենտկոմի Փետրվար-մարտյան Պլենումի դիրեկտիվը՝ կոմունիստին ներկայացված մեղադրանքների ուշադիր և մանրամասն քննարկման անհրաժեշտության մասին, ոչ միայն թեթևամիտ վերաբերմունք են թույլ տվել, այլև առանձին թաքնված թշնամիներին ու զըրպարտիչներին հնարավորություն են տվել հալածելու բոլշևիկյան կադրերը:

Չնայած այդպիսի զրպարտիչների մասին ՀամԿ(բ)Կ Կենտկոմի Հունվարյան Պլենումի պարզ ու վորոշակի դիրեկտիվներին, կուսակցական կազմակերպությունները բավարար պայքար չեն մղել և շատ զրպարտիչներ մնացել են անպատիժ:

Հունվարյան Պլենումից հետո զրպարտության համար կուսակցությունից վտարվել են 16 կոմունիստ:

Կարյերիստների ու զրպարտիչների դեմ կուսակցական կազմակերպությունների թույլ պայքարի հետևանքով, նրանք վորոշ տեղերում շարունակում են կատարել իրենց հակակուսակցական գործը, արատավորելով ազնիվ, կուսակցությանը նվիրված մարդկանց: Անհրաժեշտ է, որ կուսակցա-

կան կազմակերպությունները դրպարտիչների նկատմամբ լիովին կիրառեն ՀամԿ(բ)Կ Հունվարյան Պլենումի վորոշումը և անողոքաբար վռնդեն նրանց մեր կուսակցության շարքերից:

Հաշվետու շրջանում կուսակցական կազմակերպությունների սխալը պետք է համարել այն, վոր շատ հաճախ շատ կազմակերպություններում ամենափոքր պանցանքների համար կուսակցական կամ վոչ կուսակցական աշխատողներին հանում եյին աշխատանքից: Հաճախ կուսակցական տույժի յենթարկելու մասին վորոշումների մեջ հաջորդում է աշխատանքից հանելը՝ անկախ այն բանից, թե նրանք ինչպես են կատարում իրենց պարտականությունները այն բնագավառում, վորտեղ աշխատում են:

Ինչպես ձեզ հայտնի յե, այդպիսի սխալները մասսայական բնույթ եյին ընդունել համարյա բոլոր շրջաններում ուսուցիչների նկատմամբ:

1937 թվին Հայաստանում աշխատանքից հանվել եյին 854 ուսուցիչ: Հայաստանի Կ(բ)Կ Կենտկոմը կազմեց հատուկ հանձնաժողով, վորը քննության առավ աշխատանքից հանված ուսուցիչների դիմումնե-





րը: Դրա հետևանքով 752 ուսուցիչներ վերականգնվեցին աշխատանքում:

Կուսակցական կազմակերպությունների հիմնական խնդիրներից մեկն է կուսակցական աշխատանքի հետագա ամրացումն ու բարձրացումը գյուղական կուսկազմակերպություններում:

Կոլտնտեսությունների կուսկազմակերպությունները Հայաստանի Կ(բ)Կ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումից հետո բոլշևիկորեն ձեռնամուխ յեղան գյուղատնտեսության մեջ կատարված վնասարարության հետևանքների վերացմանը:

Չնայած իրենց փոքրաթիվությանը, կոլտնտեսային առանձին կուսկազմակերպություններ, ճիշտ դասավորելով իրենց ուժերը, անկուսակցական ակտիվի հետ միասին հաջողություններ են ձեռք բերել պետական պլանների ու պարտավորությունների կատարման գործում. որինակ՝ Աշտարակի շրջանի Դիմիտրովի անվան և Շահումյանի անվան կոլտնտեսությունները, Ղամարլվի շրջանի Նորաշեն գյուղի կոլտնտեսությունը և այլն:

Կոլտնտեսային կուսկազմակերպությունների աշխատանքի թերությունը պետք է

համարել կուսակցական-քաղաքական թույլ աշխատանքը կոլտնտեսականների մեջ: Ըսկզբնական կուսկազմակերպությունների կոմիտեների քարտուղարներն ու կուսկազմակերպիչները կուսակցության դիրեկտիվները և վորոշումները ժամանակին չեն հասցնում կոլտնտեսականներին, մինչև վոր համապատասխան ցուցումներ չստանան կուսակցության շրջկոմից:

Կուսակցական ժողովներն ընդունում են մեծ մասամբ արտադրական խորհրդակցությունների բնույթ, վորտեղ լուծվում են մանր հարցեր, դրանով իսկ դիմազրկվում են կոլտնտեսությունների վարչությունները, մինչդեռ կուսակցական կազմակերպության ուշադրությունը հարկավոր է կենտրոնացնել կոլտնտեսության կյանքի կարևոր հարցերի վրա, գյուղատնտեսական արտելի կանոնադրության խախտումների դեմ պայքարելու, արտադրական պլանների և կոլտնտեսականների պարտավորությունների կատարման վրա:

Շատ կոլտնտեսային կուսակցական կազմակերպություններում սխալ են դասավորված կուսակցական կադրերը:

Կոմունիստների մեծամասնությունն ան-



միջականորեն չեն աշխատում կոլտնտեսային բրիգադներում, այլ հաճույքով տեղավորվում են յերկրորդական աշխատանքների՝ կոլտնտեսային արտադրության սպասարկման գծով:

Միկոյանի շրջանի Գետափ գյուղի կոլտնտեսությունում սկզբնական կուսկազմակերպությունը բաղկացած է 7 մարդուց:

Նրանցից կոլտնտեսային արտադրության մեջ աշխատում են միայն յերկուսը: Այդպիսի կուսակցական կազմակերպությունը հազիվ թե կարողանա իրականացնել կոմունիստի ավանգարդային դերը կոլտնտեսային արտադրության մեջ: Այդպիսի փաստեր տեղի ունեն կոլտնտեսային շատ կուսկազմակերպություններում:

Անհրաժեշտ է, վոր շրջանային կուսակցական կազմակերպությունները, կոլտնտեսությունների սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարական կազմի ամրապնդման հետ միասին, հասնեն ուժերի ճիշտ դասավորման, կոմունիստների ավանգարդային դերի ուժեղացման, սիստեմատիկ ոգնություն ցույց տալով կուսակցական ուսուցման դրվածքի գործին, ուշադրության կենտրոնում դնելով քաղաքական

աշխատանքի ուժեղացումը կոլտնտեսականների մեջ։

Կուսակցական օրգանների աշխատանքում մեծ թերություն պետք է համարել կուսակցական տնտեսության նկատմամբ կուսակցական կոմիտեների քարտուղարների ուշադրության թուլացումը։

«Կուսփաստաթղթերի ստուգման ու պահպանման մասին» ՀամԿ(բ)Կ Կենտկոմի փակ նամակից հետո, կուսակցական կազմակերպությունները մեծ աշխատանք կատարեցին այդ բնագավառում։

Սակայն վերջին ժամանակներս շրջկոմներում նկատվում է վոչ բոլշևիկյան վերաբերմունք դեպի կուսակցական փաստաթղթերի պահպանումը։ Շրջկոմների բյուրոների արձանագրությունները ժամանակին չեն կազմվում, քարտուղարները դրանք ստորագրում են 7—10 որից հետո, իսկ յերբեմն ավելի ուշ։ Փաստաթղթերը պահվում են տեխնիկական աշխատողների մոտ։ Ռայկոմի ապարատում մարդիկ ընդունվում են առանց ուշադիր ստուգման, գործերի կառավարիչներ են նշանակվում վոչ կոմունիստներ, իսկ յերբեմն ել կասկածելի անցյալ ունեցող մարդիկ։



Շրջկոմում կուսակցական տնտեսության այլանդակ վիճակի ապացուցող փաստ է հանդիսանում կուսակցական կնիքի կորցնելը Յերևանի Ստալինյան ռայկոմում, վորը տեղի ունեցավ կուսակցական փաստաթղթերի պահպանման կարգի մասին ՀամԿ(բ)Կ Կենտկոմի հրահանգը խախտելու հետևանքով։

Այդ առթիվ թղթակցություն եր տպագրված «Պրավդա–»յում, վորը միանգամայն ճիշտ կերպով սրում է կուսակցական կազմակերպությունների ուշադրությունը կուսակցության շրջկոմներում կուսակցական փաստաթղթերի պահպանման հարցի վրա։

Կուսակցության շրջկոմների բոլոր քարտուղարները և սկզբնական կուսկազմակերպությունների կուսակցական կոմիտեների քարտուղարները, պետք է այս փաստից առնեն համապատասխան դասեր և ամենամոտիկ ժամանակում լիկվիդացիայի յենթարկեն այդ բնագավառում յեղած թերությունները, որինակելիորեն կազմակերպեն կուսակցական փաստաթղթերի պահպանման գործը։

Մի քանի խոսք սկզբնական կուսկազմա-

կերպությունների նկատմամբ կուսակցության շրջկոմների ղեկավարության մասին:

Եթե տնտեսության ղեկավարման բնագավառում շրջկոմներն իրենց ցույց են տըվել լավ կողմից, մանավորապես այս տարվա գարնանային աշխատանքներն անցկացնելու ասպարեզում, ապա կուսակցական-քաղաքական ղեկավարության գործում շրջկոմներն ունեն մեծ թերություններ ու սխալներ:

Կուսակցության շրջկոմները վատ են ղեկավարում սկզբնական կուսակցական կազմակերպություններին:

Մի քանի շրջկոմներ տեղյակ չեն իրենց սկզբնական կուսկազմակերպությունների գործնական-քաղաքական աշխատանքի մասին և վերջիններս կոնկրետ դիրեկտիվներ ու օգնություն չեն ստանում շրջկոմից՝ կուսակցական աշխատանքը բարձրացնելու ասպարեզում:

Այցելելով սկզբնական կուսկազմակերպիչներին, շրջկոմների հրահանգիչները սահմանափակվում են տնտեսական հարցերի վերաբերյալ տեղեկություններ հավաքելով: Կուսակցական կազմակերպության աշխատանքի հետ չեն ծանոթանում, կուսկոմիտեների քարտուղարներին և կուսկազմակերպիչներին չեն հրահանգավորում կուսակցական – կազմակերպչական աշխատանքի հարցերի վերաբերյալ:

Սկզբնական կուսակցական կազմակերպությունների վատ ղեկավարման բնորոշ օրինակ է հանդիսանում կուսակցության Կալինինոյի շրջկոմի աշխատանքը: Շրջկոմի աշխատողները միանգամայն կտրվել են սկզբնական կուսակցական կազմակերպություններից, չեն ճանաչում իրենց անդամներին: Շրջկոմի ապարատը մինչև այժմ կոմպլեկտավորված չէ հրահանգիչներով: Շրջանային կենտրոնի կուսակցական ակտիվը չի օգտագործվել սկզբնական կազմակերպություններում կուսակցական աշխատանք կատարելու համար:

ՀԿ(բ)Կ Կենտկոմի Կուսակցական ղեկավար օրգանների բաժինը դեռևս չի կարողացել իր հրահանգչական ապարատի միջոցով ապահովել կենդանի ու օպերատիվ կապը կուսակցության շրջկոմների հետ և վերջին ամիսներում իր աշխատանքը սահմանափակում էր միայն բողոքարկման դիմումների վերաբերյալ նյութեր պատրաստելով, չըկարողանալով հրահանգիչների շրջաններ

մեկնելն ոտնատրորել կուսակցական-կազմակերպչական հարցերի ստուգման և այդ ասպարեզում կուսակցության շրջկոմներին հրահանգավորելու համար:

Դրա հետևանքով, շրջկոմները Կենտկոմի Կուսակցական ղեկավար որգանների բաժնից (Տեղից՝ «կուսակցական ղեկավար որգանների բաժինը կարգում է») չեն ստացել այն ոգնությունն ու ղեկավարությունը, վորն այդչափ անհրաժեշտ էր կուսակցական ղեկավար որգանների ընտրությունների նախօրյակին:

## ՂԵԿԱՎԱՐՈՒԹՅՈՒՆԸ ՅԵՎ ՈԳՆՈՒԹՅՈՒՆԸ ԿՈՄՅԵՐԻՏՄԻՈՒԹՅԱՆ ՆԿԱՏՄԱՄԲ

Ի՞նչ վիճակումն է կուսակցական կազմակերպությունների ղեկավարությունը կոմյերիտմիության նկատմամբ:

Վերջին ամիսների ընթացքում մենք ունենք կոմյերիտական կազմակերպությունների մեծ աճում: 1937 թվի հոկտեմբերից մինչև 1938 թվի հունիսի 1-ը Հայաստանի կոմյերիտական կազմակերպությունները կոմյերիտմիության շարքերն են ընդունել 16.289 մարդ՝ այսինքն, 9 ամսվա ընթացքում ընդունվել են այնքան կոմյերիտականներ, ինչքան ընդունված են յեղել 1934 թվից մինչև 1937 թիվը: Այս դրությունը մեր առջև հարց է դնում կոմյերիտմիության մեջ քաղաքական-դաստիարակչական աշխատանքը բարելավելու և կուսակցական կազմակերպությունների կողմից ցույց տըրվող ղեկավարությունն ու ոգնությունն ուժեղացնելու մասին:

Յերկրորդ հարցը,— այդ, կոմյերիտմիության մեջ նոր կադրերի առաջքաշումն է: Վերջին ամիսների ընթացքում շատ յերիտասարդ կադրեր են առաջքաշվել կոմյերիտական ղեկավար որգաններում: Նրանք դեռևս չունեն բավականաչափ կազմակերպչական հմտություն, իսկ մեծ աճման և քաղաքական-դաստիարակչական աշխատանքն ուժեղացնելու անհրաժեշտության կապակցությամբ, կոմյերիտմիության առջև կանգնած խնդիրները պահանջում են սկզբնական կազմակերպությունների վորակյալ ղեկավարություն կոմյերիտական ղեկավար որգանների կողմից: Ուստի, անհրաժեշտ է, վոր կուսակցական որգաններն ուժեղ ոգնություն ու ղեկավարություն ցույց տան կոմյերիտմիությանը:

ան մի ամբողջ շարք շրջկոմներ, վո-

րոնք կոմյերիտական կազմակերպություննե-րին սիստեմատիկաբար գործնական օգնություն են ցույց տվել կոմյերիտմիության անդամների քաղուսուցման ցանցի կազմակերպման գործում, ինչպես օրինակ՝ Վաղարշապատի, Իջևանի, Արթիկի և Սպիտակի շրջանները:

Կուսակցության մի շարք շրջանային կոմիտեներ չեն ապահովում ամենօրյա ղեկավարությունը կոմյերիտական քաղուսուցման նկատմամբ և վատ են օգնում կոմյերիտական քաղցանցի պրոպագանդիստներին:

Կուսակցության Հոկտեմբերյանի և Ղափանի շրջկոմների կուլտպրոպները փոխանակ կոմյերիտմիությանը տալու պրոպագանդիստների պատրաստված կադրեր, վորոնք անհրաժեշտ են կուսակցության պատմության ուսումնասիրման խմբակները ղեկավարելու համար, կոմյերիտական ցանցը զրկել են պրոպագանդիստներից և նրանց ուղարկել կուսակցական լուսավորության գծով աշխատելու:

Հաշվետու ժամանակաշրջանում կոմյերիտմիությանը վատ են ղեկավարել կուսակցության Կալինինոյի, Մարտունու և





Ղափանի շրջկոմները, վորոնք վոչ մի անգամ շրջկոմի բյուրոյի նիստերում չեն դրել կոմյերիտմիությանը վերաբերող հարցեր և կոմյերիտմիության շրջկոմներին չեն ոգնել նրանց գործնական աշխատանքում:

Կոմյերիտմիության աշխատանքը ֆիզկուլտուրայի գծով վերջին ժամանակներս նկատելիորեն աշխուժացել է: Վերջին տարիների ընթացքում ՊԱՊ-ի առաջին աստիճանի կրծքանշանի նորմաները հանձնել են 65·471 մարդ: Միայն 1938 թվի առաջին յեռամսյակում նորմաներ հանձնել են 1·244 մարդ:

Աճում են Պաշը–Ավիաքիմի սկզբնական կազմակերպությունները: Մինչև Հոկտեմբերյան հեղափոխության 20-րդ տարեդարձը Պաշը–Ավիաքիմի կազմակերպությունները յերկրին տվել են 22 հրահանգիչ–օդաչու, 90 սավառնորդ — օդաչու, 35 պարաշյուտիստ–դեսանտնիկ, 141 առաջին կարգի պարաշյուտիստ և պարաշյուտային սպորտի յերկրորդ կարգի 8 հրահանգիչ: Ավարտվել է օդաչուների ընդունելությունը 1938 թվի համար, ընդունված են 115 մարդ, վորից 100-ը կոմյերիտական:

1938 թվի առաջին յեռամսյակում պատ-

րաստվել են 1.528 վորոշիլովյան հրաձիգ, առաջին կարգի 70 հրաձիգ և առաջին կարգի 161 գնդացրորդ:

Վերջին ամիսների ընթացքում մեծապես աշխուժացել է ՀՈՔՊ-ի աշխատանքը: 1938 թվի առաջին յեռամսյակում ՀՈՊՔ-ի նորմաները հանձնել են 15.807 մարդ: Պետք է նշել, վոր վերջին ժամանակներս կոմյերիտական կազմակերպությունները ուժեղացրել են մասսայական պաշտպանական աշխատանքը յերիտասարդության և բնակչության մեջ: Հետագայում անհրաժեշտ է ե՛լ ավելի ուժեղացնել աշխատանքն այդ գործում և կոմյերիտական կազմակերպություններին անհրաժեշտ օգնություն ցույց տալ յերիտասարդության ռազմական-սպորտային ուսուցման ցանցն ընդարձակելու գործում:

Չպետք է լինի վոչ մի կոմյերիտական, վորը հանձնած չլինի վորոշիլովյան հրաձիգի և ՊԱՊ-ի առաջին աստիճանի նորմաները:

Մեր կուսակցական կազմակերպությունները յերբեք չպետք է մոռանան, վոր մենք սահմանամերձ յերկիր ենք և սահմանամերձ զորամասերի կուսկազմակերպություններին





օգնելը մեր անհետաձգելի խնդիրն է հանդիսանում: Պետք է ավելի հաճախակի կիրառել մեր սահմանամերձ շրջանների կուսկազմակերպությունների ակտիվի՝ սահմանապահների հետ համատեղ միացյալ ժողովներ գումարելու պրակտիկան:

Յուրաքանչյուր կոմունիստ, կոմյերիտական, ու անկուսակցական պետք է իր պարտքը համարի սահմանապահներին օգնություն ցույց տալը՝ Խորհրդային Միության սրբազան սահմանների պահպանման գործում:

## ԿԱԴՐԵՐԻ ՍՌԱՋ ՔԱՇՈՒՄԸ

Հայաստանի Կոմունիստական (բոլշևիկների) Կուսակցության նշանակալից նվաճումներից մեկն է հանդիսանում կուսակցական, խորհրդային ու տնտեսական ղեկավար օրգանների մեջ սողոսկածների մերկացումից հետո հարյուրավոր ու հազարավոր յերիտասարդ թարմ կադրերի համարձակ առաջքաշումը կադրեր՝ վորոնք նվիրված են իրենց հայրենիքին, կոփված են ժողովրդի թշնամիների դեմ մղվող պայքարում:

Հայաստանի Կ(բ)Կ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումից հետո առաջ են քաշվել 1733 ընկեր: Այդ թվում՝ 1387 կոմունիստ, 221

կոմերիտական և 125 անկուսակցական:

Առաջքաշման աշխատանքում թերություն է հանդիսանում այն, որ մենք առայժմ քիչ անկուսակցականների ենք առաջ քաշել ղեկավար աշխատանքի: (Ձայներ տեղերից՝ «Կոմերիտականներ նույնպես քիչ են առաջ քաշված»): Թույլ են առաջ քաշվում ղեկավար աշխատանքի նաև կանայք: (Ձայներ՝ «Ճիշտ է»):

Կուսակցական աշխատանքի առաջ են քաշվել 414 ընկեր, խորհրդային աշխատանքի՝ 650, տնտեսական աշխատանքի՝ 428, առևտրա-կոոպերատիվ աշխատանքի՝ 80 և պրոֆմիութենական աշխատանքի՝ 18:

Կուսակցական օրգանների անցկացված ընտրությունները շարունակեցին լավագույն, կուսակցությանը նվիրված կադրերի առաջքաշումը կուսակցական ղեկավար օրգաններում:

Կուսակցական ղեկավար օրգանների ընտրություններն անցկացնելու մասին Համ. Կ(բ)Կ Կենտկոմի որոշմանը և հրահանգին համապատասխան, Հայաստանի Կ(բ)Կ շրջանային ու քաղաքային կուսկազմակերպությունները լայնորեն ծավալեցին հաշվետվությունների և ընտրությունների նախապատրաստվելու աշխատանքը:



Կուսակցության շրջկոմների պլենումների որոշումներն ընտրությունների մասին, հիմնվում էին անցյալ տարվա փորձը հաշվի առնելու, անցյալ տարի թույլ տրված սխալներն ուղղելու և ուշադրությունը կուսակցական - քաղաքական ու տնտեսական աշխատանքի ճիշտ զուգակցման վրա կենտրոնացնելու, ՀամԿ(բ)Կ Կենտկոմի Հունվարյան Պլենումի որոշումներն անշեղորեն կենսագործելու, կուսօրգանների ընտրությունները գարնանացանի հաջող ավարտման նշանաբանով անցկացնելու և Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի պատգամավորների ընտրության ուղղությամբ մասսայական- ագիտացիոն աշխատանքն ուժեղացնելու վրա:

Հայաստանի Կ(բ)Կ կուսակցական կազմակերպությունների հաշվետվություններն ու ընտրություններն սկսվեցին այս տարվա ապրիլի 6-ին և ամբողջ կուսկազմակերպության մեջ ավարտվեցին մայիսի 15-ին:

Հաշվետու - ընտրական ժողովներում ցուցաբերվեց մեծ ակտիվություն, և կուսկոմիտեների քարտուղարների ու կուսկազմակերպիչների հաշվետվությունների շուրջը ծավալված մտքերի փոխանակությանը, 742 սկզբնական կուսկազմակերպությունների

տվյալներով, մասնակցել ե ժողովներին ներ
կա գտնվողների 71 տոկոսը:

Մտքերի փոխանակությունն անցնում եր
քննադատության և ինքնաքննադատության
լայն ծավալման նշանաբանով: Սրտահայտ-
վողները հատկապես սրում եյին ուշադրու-
թյունը կուսկազմակերպությունների աշխա-
տանքի հետևյալ բացասական կողմերի վը-
րա — կուսակցական - պրոպագանդիստա-
կան աշխատանքի, կոմունիստներին կուսակ-
ցությունից վտարելիս թույլ տրված սխալ-
ների ուղղման, գյուղատնտեսության ու ար
դյունաբերության մեջ վնասարարության
հետևանքների վերացման և կուսակցության
շրջկոմների կողմից սկզբնական կուսկազմա-
կերպությունների ղեկավարման հարցերի
վրա:

Հաշվետու – ընտրական ժողովներն անց-
կացնելու պրոցեսում հայտնաբերվեցին կու-
սակցության կանոնադրության և ներկու-
սակցական դեմոկրատիայի խախտման փաս-
տեր:

Ալավերդու շրջանի Այգեհատ գյուղի կուս
կազմակերպության մեջ կուսակցության
թեկնածուն մասնակցել ե գաղտնի քվեարկու
թյանը և ընտրվել ե կուսկազմակերպչի տե-
ղակալ:

Ամասիայի շրջանի Կարաչանթայի կուս-
կազմակերպությունում, վորն ունի կուսակ-
ցության 15 անդամ ու թեկնածու, կուսակ-
ցական կոմիտեյի փոխարեն ընտրվել ե կուս
կազմակերպիչ: Նույնպիսի փաստ տեղի յե
ունեցել Ապարանի շրջանի՝ Բազրլույի կուս-
կազմակերպությունում:

Վաղարշապատի շրջանի «Անաստված» կոլ
տնտեսության կուսկազմակերպությունում
կուսկոմիտեյի կազմի ընտրության ժամա-
նակ ընտրվել են կուսկոմիտեյի անդամու-
թյան թեկնածուներ: Նույնպիսի փաստեր
տեղի յեն ունեցել նաև Հոկտեմբերյանի և
Ն.-Բայազետի շրջանների կուսկազմակեր-
պություններում:

Կիրովականի շրջանի Արջուտ գյուղի կուս
կազմակերպությունում կուսակցական ժողո
վի ժամանակ քվեարկելու իրավունքից զըր-
կել եյին կուսակցության այն անդամներին,
վորոնք իրենց մոտ քվեարկության ժամա-
նակ չունեյին կուստոմս:

Լենինականի շրջանի արհեստագործական
կոոպերացիայի կուսկազմակերպությունը
կուսկոմիտեյի քարտուղար եր ընտրել այլ
կուսկազմակերպության անդամի:

Այդ բոլոր կուսկազմակերպություննե-
րում ժողովները չեղյալ հայտարարվեցին և

անցկացվեցին նորից, լիովին պահպանելով կուսակցության կանոնադրությունը:

Կոնսերվի գործարանի կուսկազմակերպության կուսկոմիտեյի քարտուղարի հաշվետու զեկուցումից հետո, Ստալինյան ռայկոմի և Կենտկոմի Կուսակցական ղեկավար օրգանների բաժնի կողմից կուսակցական ժողովը 10 րոպով ընդհատվում է, կուսկոմիտեյի քարտուղարի հասցեին յեղած մեղադրանքներն ստուգելու համար:

Ներկուսակցական դեմոկրատիայի խախտման փաստեր են նշվել Գորիսի, Դիլիջանի, Ղամարլվի, Հոկտեմբերյանի, Ստեփանավանի և Թալինի շրջանների սկզբնական կուսկազմակերպություններում:

Գորիսի շրջանի Դիստանցի և Ալիղուլի գյուղերի կուսկազմակերպություններում կուսկազմակերպիչներին ընտրել են բաց քվեարկությամբ: Նույնպիսի դեպքեր նշվել են Յերևան ու Լենինական քաղաքներում և մի քանի այլ շրջաններում: Ղամարլվի շրջանի բանկի աշխատողների կուսկազմակերպությունում կուսկազմակերպչի և նրա տեղակալների թեկնածությունները քննարկելու համար կազմել էյին ընդհանուր ցուցակ և գաղտնի քվեարկության հետևանքով ստացված ձայների քանակությամբ փորձել





կուսկազմակերպչի ու նրա տեղակալների ընտրությունը:

Այդ բոլոր կուսկազմակերպություններում ուղղվել են ընտրությունների մասին Համ. Կ(բ)Կ Կենտկոմի հրահանգի՝ նրանց կողմից թույլ տրված խախտումները:

Կուսակցական օրգանների ընտրությունների ժամանակ ընտրված՝ սկզբնական կուսկազմակերպությունների կուսկոմիտեների 356 քարտուղարներից նորից ընտրվածներ են 115-ը, 1.051 կուսկազմակերպիչներից՝ 329-ը նոր ընտրվածներ են:

Անցկացված հաշվետու - ընտրական ժողովները հանդիսացան յուրաքանչյուր կուսկազմակերպության և յուրաքանչյուր կուսակցական աշխատողի մարտունակության բոլշևիկյան ստուգումը:

Ընկեր Ստալինը մեզ սովորեցնում է.

«Կուսակցական մասսաներն իրենց ղեկավարներին ստուգում են ակտիվի ժողովներում, կոնֆերանսներում, համագումարներում, նրանց հաշվետվությունները լսելու միջոցով, վերջապես, այս կամ այն ղեկավար օրգանների մեջ ընտրելու կամ չընտրելու միջոցով: Դեմոկրատական ցենտրալիզմի ճշգրիտ կիրառումը կուսակցության մեջ, ինչպես այդ պահանջում է մեր կու-

սակցության կանոնադրությունը, կուսակցական օրգանների անպայման ընտրականությունը, թեկնածուներ առաջադրելու և թեկնածուների դեմ առարկելու իրավունքը, փակ քվեարկությունը, քննադատության ու ինքնաքննադատության ազատությունը, — այս բոլոր և դրանց նման միջոցառումներն անհրաժեշտ են կենսագործել ի միջի այլոց նրա համար, վորպեսզի հեշտացվի կուսակցության ղեկավարների ստուգումն ու վերահսկողությունը կուսակցական մասսաների կողմից»:

Կուսակցական ղեկավար օրգանների ընտրությունների մասին ՀամԿ(բ)Կ Կենտկոմի հրահանգն ու վորոշումը ստույգ կերպով պահպանելու շնորհիվ, կուսակցական կազմակերպություններն իրականացրին կուսակցական օրգանների ու նրանց ղեկավարների աշխատանքի մանրամասն ստուգումն ու վերահսկումը:

Կուսակցական օրգանների ընտրությունների ժամանակ կուսակցական կազմակերպությունները ճիշտ եյին մոտենում կուսակցական օրգանների կազմի և քարտուղարների նոր թեկնածուների ընտրությանը: Թեկնածությունները քննարկվում եյին ըստ քաղաքական սկզբունքի — թե նրանք վոր[illegible]





են արժանի քաղաքական վստահության և պիտանի՞ յեն արդյոք կոնկրետ աշխատանքի համար:

Կադրերի ընտրության նկատմամբ լենինյան — ստալինյան մոտեցումը ճիշտ իրականացնելու շնորհիվ, կուսակցական օրգաններում ընտրվեցին արժանավոր և ըստուգված, կոմունիզմի գործին նվիրված կուսակցական կադրեր:

Կուսակցական օրգանների ընտրությունները բոլոր կազմակերպություններում առաջացրին կուսակցական մասսաների քաղաքական ակտիվության ու հեղափոխական զգաստության վերելք:

Ընտրությունների հանրագումարում Հայաստանի Կ(բ)Կ կուսակցական կազմակերպություններն ամրապնդվեցին և դարձան ավելի քան կոփված՝ ժողովրդի թշնամիների դեմ մղվող պայքարում:

Մի քանի որից հետո ամբողջ հայ ժողովուրդը կընտրի իշխանության բարձրագույն օրգանը — Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհուրդը: Արդեն բոլոր ոկրուգներում անց են կացել բանվորների, կոլտնտեսականների, ծառայողների, կարմիր բանակայինների և աշխատավոր ինտելիգենցիայի բազ[illegible] ժողովներ: Ամենուրեք մեծ խանդա-

վառությամբ պատգամավորի թեկնածուներ են առաջադրված լավագույն հայրենասերները, բանվոր դասակարգի ներկայացուցիչները, գյուղացիները, աշխատավոր ինտելիգենտները, այն մարդիկ, վորոնք մինչև վերջ նվիրված են Լենինի – Ստալինի կուսակցությանը:

Կոմունիստների և անկուսակցականների բլոկի թեկնածուներն արդեն ցուցակագրված են Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի ընտրությունների ոկրուգային հանձնաժողովներում:

ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի ընտրությունների արդյունքներն ամբողջ աշխարհին ցույց տվին անծայրածիր Խորհրդային յերկրի ժողովուրդների սերտ համախմբվածությունը բոլշևիկների մեծ կուսակցության շուրջը, մեր կուսակցության Կենտրոնական Կոմիտեյի շուրջը, ժողովրդի հանճար մեծ Ստալինի շուրջը: (Բուռն ծափահարություններ: Համագումարը վոտքի կանգնած ովացիա յե սարքում):

Ընտրությունների արդյունքներն ամբողջ աշխարհին ցույց տվին, թե վորքան հզոր, մեծ ու անպարտելի յե Խորհրդային Միությունը — ազատության հայրենիքը, հրճվանքի, յերջանկության հայրենիքը, աննա-





խրնթաց հաղթանակների հայրենիքը, միջազգային պրոլետարիատի հայրենիքը:

Հայ ժողովուրդը 1937 թվի դեկտեմբերի 12-ին, մեծ Խորհրդային Միության ժողովուրդների ընտանիքում, իր միահամուռ քվեարկությամբ ցուցադրեց իր անսահման սերն ու նվիրվածությունը բոլշևիկների հզոր կուսակցությանը:

Հունիսի 12-ին հայ ժողովուրդն իր պատմության մեջ առաջին անգամ, Ստալինյան Սահմանադրության հիման վրա, կոմունիստների և անկուսակցականների բլոկում, ստալինյան մեծ միասնության նշանաբանի տակ նույնպիսի խանդավառությամբ, համախմբվածությամբ ու միահամուռությամբ կընտրի իր Գերագույն Խորհուրդը:

Հունիսի 12-ին հայ ժողովուրդը ձայն կըտա իր հարազատ՝ բոլշևիկների կուսակցության ոգտին, կոմունիստների և անկուսակցականների բլոկի թեկնածուների ոգտին, ժողովրդի լավագույն զավակների, բոցաշունչ հայրենասերների ոգտին, վորոնք բոլշևիկյան կրքոտությամբ պայքարում են հանուն իրենց սոցիալիստական հայրենիքի հետագա հաղթանակների:

Այն հրճվալից լուրը, վոր ամբողջ աշխարհի աշխատավորների առաջնորդ, մեր

մեծ, հարազատ Ստալինը տվել է իր համաձայնությունը՝ քվեարկվելու որպես Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի պատգամավոր, հայ ժողովրդին համակեց բուռն, անսահման հրճվանքի ու ցնծության զգացմունքով: Բազմաթիվ միտինգներում ամբողջ ժողովուրդն արտահայտում էր իր հպարտությունն ու երջանկությունն այն բանի համար, որ արժանացել է այդպիսի մեծ պատվի, բարձր վստահության— քվեարկել նրա օգտին:

Ով մեր երկիրը Լենինյան ուղիով անշեղորեն տարել և տանում է հաղթանակից հաղթանակ,

Ով երջանիկ է դարձրել Խորհրդային Միության ժողովուրդներին, ձայն տալ նրա օգտին, ով անձամբ գլխավորել է պայքարը հանուն հայ ժողովրդի ազատագրման — վոխերիմ թշնամիներից՝ դաշնակներից,

Ով մեր հաղթանակների բոլոր տարիներին հայրական հոգատարությամբ հետևում է վերածնվող Խորհրդային Հայաստանի ծաղկմանը,

Ով բոլշևիկյան խորաթափանցությամբ յերևան բերեց դավաճաններին ու ժողովրդի թշնամիներին, ֆաշիզմի անիծյալ վարձկաններին — բուրժուական նացիոնալիստներին,



աջ-տրոցկիստական անարգ իժերին, որոնք ուզում էին վաճառել հայ ժողովրդի ձեռք բերած ստալինյան երջանկությունը, նրա ծաղկող հայրենիքը:

Նույնպիսի մեծ հրճվանքով ու հպարտությամբ դիմավորեց հայ ժողովրդին այն լուրը, որ սիրելի Իոսիփ Վիսսարիոնովիչ Ստալինի մերձավոր զինակիցները— Խորհրդային հզոր կառավարության ղեկավարներ Վյաչեսլավ Միխայլովիչ Մոլոտովը և Անաստաս Իվանովիչ Միկոյանը համաձայնություն են տվել քվեարկվելու որպես Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի պատգամավորներ: (Բուռն ծափահարություններ, որոնք վեր են ածվում օվացիայի):

Հունիսի 12-ի օրը կլինի համաժողովրդական պայծառ տոնի օր, հաղթանակների հանդեսի օր, Լենին-Ստալինի մեծ կուսակցության շուրջը մեր բարոյական- քաղաքական միասնության ցուցադրման օր:

Անշեղորեն իրականացնելով ստալինյան լոզունգը՝ կոմունիստների և անկուսակցականների բլոկի մասին, Հայաստանի Կոմունիստական (բոլշևիկների) կուսակցությունը հունիսի 12-ի օրը կհանի ամբողջ աշխատավոր ժողովրդի չտեսնված միասնության,

ժողովուրդ, վորը կընտրի իր Գերագույն Խորհուրդը՝ մեծ Ստալինի գլխավորությամբ: (Բուռն ծափահարություններ):

Հայաստանի բոլշևիկները, վորոնք մեծ հաղթանակներ են ձեռք բերել ֆաշիզմի աջ-տրոցկիստական և դաշնակցական գործակալներին մերկացնելու և իրենց շարքերից վռնդելու գործում, այսուհետև ևս ամենայն անողոքությամբ դատաստան կտեսնեն կուսակցության ու ժողովրդի բոլոր թշնամիների նկատմամբ:

Հայաստանի Կոմունիստական (բոլշևիկների) Կուսակցությունը, հանդիսանալով Համամիութենական Կոմունիստական (բոլշևիկների) կուսակցության հավատարիմ, մարտական ջոկատը, միասնական է, միաձույլ և ամուր համախմբված է ՀամԿ(բ)Կ Կենտրոնական Կոմիտեի ու մեծ Ստալինի շուրջը: (Բուռն, յերկար ժամանակ չլռող ծափահարություններ, վորոնք փոխվում են ովացիայի: Համագումարը վոտքի կանգնած վողջունում է ժողովուրդների մեծ առաջնորդ ընկեր ՍՏԱԼԻՆԻՆ):







ՀԽՍՀ ԿԳԿ Հրատարակչություն—
«Խորհրդային Հայաստան»

---

# ԲԱՑՎԱԾ Է 1938 Թ.

բաժանորդագրությունը

# ,,ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ''

Լույս է տեսնում ամիսը 2 անգամ ՀԿ(բ)Կ Կենտկոմի կուլտպրոպագանդայի և ագիտացիայի բաժնի հրատարակությամբ

ԲԱԺԱՆԵԳԻՆԸ՝

12 ամիսը . . 6 ռուբ.

6 » . . 3 »

3 » . . . 1 ռ. 50 կ.

Առանձին համարը՝ 25 կոպ.

Բաժանորդագրվելու համար դիմել՝ «Սոյուզպեչատ»-ի քաղաքային, շրջանային բյուրոներին և փոստի բաժանմունքներին: